

# ՆՈՐԻՑ ԴՊՐՈՑՈՒՄ

*ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ*

Լուսամուտները բարձր են ու լայն,
Պատերն՝ սպիտակ, սեղանը՝ կանաչ,
Վզկապը՝ կարմիր, ծաղիկները՝ թարմ
Եվ դասատուի մազերը՝ ճերմակ:
Կանչեր ու ծիծաղ՝ միջանցքներում,
Ժապավենները՝ թիթեռներ թռչող,
Կավիճի հետքեր՝ փոքրիկ ափերում,
Սրտի տրոփյուն՝ զանգին սպասող:
Գունավոր թռչուն՝ պատուհանի մոտ,
Զրնգացող երգ՝ դասարանի մեջ,
Լույս ու ստվերի պայծառ առավոտ,
Հիշողության մեջ կմնաք հավերժ:

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*



# Կապույտ աչքերով մարդը

ՍԵՐՈԲ ԲԱՐԽՈՒԴԱՐՅԱՆ

Ես փոքր էի, հազիվ վեց տարեկան, բայց այսօրվա պես հիշում եմ. ապրում էինք Բի-Բի-Հեյբաթում: Դիմացը ծովն էր, Կասպիական ծովը: Ծովի ու մեր տան մեջտեղում փռված էին նավթի բուրգերը: Հաճախ տնից դուրս էի գալիս, գնում դեպի բուրգերի անտառը, բայց չէի հասնում նրան ու կանգնում էի Դոշի բաշին, դիտում պկնապիշ...

Մի օր սրտապնդվեցի ու ցած իջա դոշնիվար, բայց նավթահան բուրգերին չհասա: Մինչև բուրգերը գորշ ցեխով պատած հսկայական մի տարածություն կար: Փորձեցի քայլել նավթից ազատ ցեխի վրայով: Մի երկու թռիչք, ու ես խրվեցի ցեխի մեջ... Ինչքան ուզեցի ոտքս հանել՝ մյուս ոտքս ավելի խրվեց ու նստեցի ցեխի մեջ: Նայեցի շուրջս, մարդ չկար, կատարյալ ամայություն. դիմացը փռված էր նավթաբուրգերի անտառը, իսկ ետևում, սարի լանջին՝ մեր տունը: Գոռում էի, ճչում, լսող չկար. հոնգուր-հոնգուր լաց եղա, հոգնեցի, թմրեցի... Չեմ հիշում ինչքան ժամանակ էր անցել, երբ ոտնաձայն լսեցի, ետ շրջեցի՝ երկու մարդ կանգնել էին լճափին. մեկը Մելքում քեռին էր, ես նրան ճանաչում էի, նա շուտ-շուտ մեր տուն էր գալիս, իսկ մյուսին առաջին անգամ էի տեսնում:

Մելքում քեռին թոկի ծայրը շպրտեց ինձ ու ասաց՝ կապիր մեջքիդ ու պինդ բռնիր թոկից: Ես այդպես էլ արի... Երկուսով ձգեցին ինձ: Մեջքս ցավից ջարդվում էր, արցունքներս հազիվ էի զսպում... ցեխակոլոլ ոտքի կանգնեցի: Անծանոթն ու Մելքում քեռին թևերիցս բռնած տուն տարան...

Հորաքույրս ինձ տեսնելով, շատ ուրախացավ: Նա կարծում էր կորել եմ, էլ չեմ գտնվելու...

Քիչ հետո մաքուր հագնված եկա պատշգամբ: Անսովոր իրարանցում էր մեր տանը. շատ անծանոթ մարդիկ կային: Հորաքույրս ինձ չէր թողնում գնալ դեպի այն սենյակը, որտեղ հավաքվել էին նրանք: Նման դեպքերում հայրս ինքն էր ինձ հյուրերի մոտ տանում: Բայց այդ օրը կարգադրել էր դուռը բաց չանել...

Ոտքերիս ծայրերին մոտենում էի դռանը, կամացուկ բացում ու նայում արանքից: Խոսում էր ինձ արդեն ծանոթ կապույտ աչքերով մարդը: Հորաքույրս վազելով գալիս էր, թևիցս բռնում ու դուրս տանում: Վերջին անգամ էլ իջեցրեց բակը: Բակից փողոց

Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ

ելա: Փողոցում կանգնել էր Մելքում քեռին: Հենց այդ պահին մի անծանոթ մարդ մոտենում էր մեր տանը: Նա ստեպ-ստեպ չորս կողմն էր նայում ու առաջ գալիս: Մելքում քեռին կտրեց նրա ճանապարհը: Անծանոթը ետ նայեց... Երկու ոստիկան հետևում էին նրան: Մելքում քեռին մի ապտակ հասցրեց անծանոթին: Պատճառը ինձ հայտնի չէր: Սկսվեց կռիվը: Ես վախից տուն փախա: Հայրս ընդառաջ եկավ ու ինձ հանգստացրեց: Հորաքույրն արդեն հորս ասել էր Մելքում քեռու և անծանոթի կռվի մասին: Ոստիկանները մոտեցան կռվողներին ու Մելքում քեռու ձեռքերը շղթայեցին: Հայրս ոստիկաններին ինչ-որ բան ասաց ու նրանցից մեկի հետ տուն բարձրացավ և ուղիղ տարավ այն սենյակը, որտեղ քիչ առաջ խոսում էր կապույտ աչքերով մարդը: Բայց սենյակում, բացի հորեղբայրներից ու մեր հարևանից, ուրիշ մարդիկ չկային, իսկ եղածներն էլ նստած ճաշում էին:

Մելքում քեռուն տարան...

Ես շատ տխրեցի:

Անցան օրեր. Մելքում քեռին չէր երևում, ես կարոտում էի նրան, հիշում նրա կատակները...

Մի օր էլ տեսա լաց է լինում հորաքույրը. հարցրի պատճառը: Նա գրկեց ինձ, սեղմեց կրծքին, ու երկար չպատասխանեց, հետո սրբեց աչքերն ու ասաց.

— Էլ չկա Մելքում քեռին, ոստիկանատանը այնքան ծեծել են, որ չի դիմացել...

Անցան տարիներ: Ես ապրում էի հորաքրոջս տանը, հայրենի փոքրիկ քաղաքում: Արդեն մեծ էի, սովորում էի վեցերորդ դասարանում: Դպրոցից տուն եկա, ճաշից հետո նստած դաս էի սովորում: Բանաստեղծությունը կարդացի մի քանի անգամ: Հորաքույրս նստել էր թախտին, ինչ-որ բան էր կարում:

— Բա՛րձր կարդա, ուզում եմ լսել:

Կարդացի .«Սիրտդ որպես վառ ատրուշան պահիր վառ...»

— «Սիրտդ հրկեզ, մթնում դաժան, պահիր վառ...»— շարունակեց հորաքույրն ու հառաչեց. Ես մոտեցա նրան:

— Ինչու՞ հառաչեցիր, հորաքո՛ւյր:

— Այս բանաստեղծությունը նվիրված է Ստեփան Շահումյանի հիշատակին,— պատասխանեց նա:

— Գիտեմ, այդ մասին ասել է մեր ուսուցիչը: Ա՛յ, գրքում,— ցո՛ւյց տվեցի՝ Ստեփան Շահումյանը նստած էր, մի փոքրիկ երեխա էլ ծնկներին, ու տակը գրված. «Ստեփան Շահումյանն ու իր Սերյոժան»:

Հորաքույրը վերցրեց ձեռքիցս, նայեց երկար ու դարձավ ինձ.

— Դու չե՞ս հիշում:

— Ո՞ւմ,— հարցրի ակամա:

— Շահումյանին:

Հորաքույրը հիշեցրեց տասը տարի առաջ կատարվածը...

— Ինձ ցեխից հանող, կապույտ աչքերով բարի մարդը Ստեփան Շահումյա՛նն էր:

Հորաքույրը գլխով արեց:

— Մելքում քեռին Շահումյանի համա՞ր զոհեց իր կյանքը:

— Այո՛, բալա՛ ջան, Շահումյանն էլ իր կյանքը զոհեց մեզ համար...

# Կ Ա Ր Մ Ի Ր

ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

Այգին գյուղի ծայրին էր, դպրոցից ոչ հեռու: Այգետերը, Ղումաշ տատը՝ ծերացած, ամքած մի կին: Ընդարձակ էր տատի այգին: Կողք-կողքի աճում էին ու պտուղ տալիս տանձենին ու խնձորենին, սալորենին ու բալենին:

Վաղ առավոտից մինչև ձյան կաթելը Ղումաշ տատի ծառերին միրգ կար, իսկ տան կտուրին՝ կըտավին փռած չիր: Ավագ պապը մահացել էր, աղջիկները՝ ամուսնացել, թողել գնացել: Տղան չէր վերադարձել պատերազմից, ու տատը մենակ էր ապրում: Շուն ուներ Ղումաշ տատը, այգու հավատարիմ պահապանը: Երեխաները սարսափում էին:

— Շուն մի ասի, մի առյուծ ասա,— պատմում էր մեր դասարանցի Վարդանը, որ մի անգամ փորձել էր ճաշակել Ղումաշ տատի այգու բարիքներից, բայց տեսնելով կատաղած գամփռին, լեղաճաք ծըլկել էր:

— Չէ՛,— ասում էր նա,— քանի Ասլանը կա, այդտեղով ծիտն էլ չի թռչի,— տղաները համաձայնվում էին: Դե, Վարդանն այդ հարցում ամենագիտակն էր:

Տղաները սովորություն ունեին խնձոր, տանձ, վարունգ թռցնել հարևանների բոստաններից: Թռցնողների մեջ հաճախ լինում էր նաև այգետիրոջ տղան: Դա զարմանալի չէր, մի տեսակ գողություն էլ չէր: Այդպես էին դիտում նաև մեծերը:

Ես քիչ էի մասնակցում նման գործողություններին, չգիտեմ վախի՞ց, թե՞ ամոթից: Եվ եթե ստիպված էի լինում «չդավաճանել» ընկերներիս, ապա մնում էի «պահակակետում», հետևելու, թե հո մարդ չի՞ գալիս:

...Տղաները որոշել էին, ինչ գնով էլ լինի, Ղումաշ տատի խնձորից համտեսել: Դա ուշ աշնան էր: Արդեն քիչ այգիներում էր պտուղ մնացել:

— Տղե՛րք,— ասաց Վարդանը,— քանի օր է տատի շունը չի երևում, երևի հիվանդ է:

— Իսկը խնձոր ուտելու ժամանակն է,— ոգևորվեց Զավենը,— ուրեմն դասերից հետո...

...Առաջինը պատի վրայից ներս գլորվեց գնդլիկ Վարդանը:— Արի՛,— ասաց նա կամացուկ,— ո՛չ շուն կա, ո՛չ մարդ — Ես նույնպես թռա պատի վըրայով: Այգու անկյունում մի ցածրահասակ խնձորենի կար, պտուղները՝ կարմի՜ր, կարմի՜ր: Կարծես վրձինով թանձր ներկել էին, որ սպիտակ ոչ մի կետ չմնա: Բարձրացա ծառը և սկսեցի քաղել: Նախ լցրեցի գրպաններս, ապա՝ ծոցս:

— Թռի՛ր,— հանկարծ լսեցի Վարդանի վախե-

# ԽՆՁՈՐՆԵՐ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



ցած ձայնը։ Նրա թրմփոցը և փախչելը մեկ եղավ։ Եվ այդ պահին, ծառի տակ, նկատեցի հաղթանդամ մի տղամարդու։ Ղումաշ տատի հարևան Արամ քեռին էր։ Նա խիստ ձայնով հրամայեց՝ իջի՛ր։ Լուռ հնազանդվեցի։

— Քայլի՛ր,— ասաց նա,— առա՛ջ դեպի տուն։

Ինձ տարավ Ղումաշ տատի մոտ։

— Էս ո՞վ է,— չտեսնող հայացքով նայեց տատը։

— Սուրենի տղան,— արհամարհանքով խոսեց Արամ քեռին։

— Վա՛յ, քոռանամ ես, ինչ քոռացել եմ,— մեղմաձայն ասաց տատը,— տեսնո՞ւմ եմ, որ ճանաչեմ։

— Պետք էլ չի, որ ճանաչես,— վրդովվեց Արամ քեռին։— Բա էս տեսակ մարդուն պետք է ճանաչե՞լ։ Եկել ծեր կնոջ բաղից խնձոր է գողանում, ուրիշներին էլ ետևից գցած։

Նոր միայն հիշեցի Վարդանին, մյուսներին։

# ՊՈՒՇԿԻՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

## ԾՆՆԴՅԱՆ 175-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



*ՍԵՐԳԵՅ ԴԱՐՈՆՅԱՆ*
*(Բանասիրական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր)*

*1829 թվականի մարտին, ռուս-թուրքական պատերազմի եռուն շրջանում, Ալեքսանդր Սերգեևիչ Պուշկինը Պետերբուրգից անսպասելիորեն մեկնեց Մոսկվա՝ մտադրություն ունենալով այնտեղից ուղևորվել Կովկաս: Այդ ժամանակ նրա վրա գործ էր հարուցված «Անդրեյ Շենյե» ռևոլյուցիոն բանաստեղծության և «Գաբրիելական» հակակրոնական պոեմի համար: Բանաստեղծին արգելել էին ազատ տեղից-տեղ գնալ, իսկ նրա բանաստեղծությունները պետք է գրաքններ անձամբ ցարն ինքը: Հետագայում բանաստեղծը իր այս ինքնագլուխ արարքը ժանդարմների պետ Բենկենդորֆին բացատրեց խիստ անձնական շարժառիթով՝ Վրաստանում ծառայող իր կրտսեր եղբորը՝ Լև Սերգեևիչ Պուշկինին տեսնելու ցանկությամբ: Կովկաս հասնելով, նա այնտեղ չգտավ եղբորը և ճանապարհը շարունակեց դեպի գործող բանակ. «ոչ այն է որպես զինվոր, ոչ այն է որպես ճանապարհորդ»:*

*Անձնական շարժառիթը, իհարկե, չի կարելի անտեսել, բայց Պուշկինին այդ հեռավոր ճամփորդության մղողը հավանաբար միայն այդ չէր:*

*Դեռևս ռուս-թուրքական պատերազմի սկզբին (1828 թ.) բանաստեղծը դիմել էր թագավորին, խնդրելով իրեն բանակ ուղարկել, և մերժում էր ստացել: Եղբորից բացի, Կովկասում ծառայում էին նաև Պուշկինի մոտ բարեկամները՝ աքսորված դեկաբրիստները: Պուշկինի հանդիպումը նրանց հետ անցանկալի կլիներ ինքնակալի համար:*

*Պուշկինը համակրանքով էր վերաբերվում թուրքական լծի դեմ Հունաստանի և Բալկանյան երկրների մղած ազատագրական պայքարին: Այդ իրադարձությունների առիթով նա գրեց «Պատերազմ» (1821) բանաստեղծությունը և «Կիրջալի» (1820-ական թթ.) վիպակը: Պուշկինը պետք է որ բուռն ցանկություն ունենար*

---

«Տեսնես ո՞ւր կորան անպիտանները... այ թե հիմարություն արեցի ես»: Քրտնել կարմրել էի, կոկորդս ցամաքել, շունչս կտրվում էր:

— Խոսիր է՜, ինչ ես լալացել,— ձայնը բարձրացրեց Արամ քեռին,— հլա մի նայիր ո՞նց է կարմրրել:— Լա՛վ է, լա՛վ է, կարմրելը լավ բան է: Դե, եթե կարմրում ես, ուրեմն գլուխդ մի բան մտնում է, հասկանում ես, թե ինչ վատ բան է արածդ:

Ղումաշ տատը չէր խոսում, լուռ լսում էր բարկացած հարևանի խրատները:

— Ոչի՜նչ,— վերջապես խոսեց նա,— երեխա է, չի հասկացել, ուրիշների խելքին է ընկել: Արի՛, Լևոն ջան, մո՛տ արի,— կանչեց տատը:— Էդ մեծ ամանում տանձ կա, կե՛ր:

Արամ քեռին տեսնելով Ղումաշ տատի ներողամիտ վերաբերմունքը, բարկացած դուրս գնաց:

— Ես գող եմ բռնել բերել, իսկ սա պատժելու փոխարեն՝ տանձ է հյուրասիրում,— դռան ետևից լսվեց նրա ձայնը:

Չէի կարողանում ոչ խոսել, ոչ ուտել:

— Կե՛ր, կե՛ր,— նորից խոսեց տատը,— սրանից հետո եթե խնձոր ուտել ուզես, արի էս կողմից ձեն տուր, որ շունը հանկարծ չկծասի:

Հազիվ էի զսպում արցունքներս: Տատի բարությունը ինձ այնպե՛ս էր խեղճացրել: Նա դանդաղ վեր կացավ, մահճակալից բռնելով մոտեցավ փայտաշեն մեծ ամբարին, որի մեջ ցորեն, ալյուր էին պահում, և այնտեղից խնձորով լիքը մի դույլ հանեց:

— Վերցրու տա՛ր,— ասաց,— մայրիկիդ կասես Ղումաշ տատն է ուղարկել:

Ես համրացած վերցրի դույլը և գնացի:

մասնակցելու սուլթանական Թուրքիայի դեմ մղվող պատերազմին, որի լծի տակ այն ժամանակ հեծում էր նաև հայ ժողովուրդը: Խորապես հավատալով Ռուսաստանի ազատագրական առաքելությանը, Պուշկինը ուշադրությամբ հետևում էր ռուս-պարսկական պատերազմի իրադարձություններին (1826-1828 թթ.), որն ավարտվեց Արևելյան Հայաստանի միացումով Ռուսաստանին: Նա բազմիցս լսել էր այդ պատերազմի մասնակիցներ Ալեքսանդր Գրիբոյեդովի և Դենիս Դավիդովի պատմածները, հիացած էր ռուսական բանակի սխրանքներով ու հերոսությամբ: Ռուսական բանակի կազմում կռվում էին նաև շատ հայ զինվորականներ՝ այդ թվում ականավոր զորավարներ գեներալ Վ. Մադաթովը, իշխան Վ. Բեյբութովը և այլն:

Երբ բռնկվեց ռուս-թուրքական պատերազմը, հայրենասեր բանաստեղծը չէր կարող անմասն մնալ իր երկրի հարավային սահմանի մոտ կատարվող կարևոր իրադարձություններին և, արհամարհելով ամեն մի արգելք, ինքնագլուխ մեկնեց Կովկաս: Որ Պուշկինը խնամքով նախապատրաստվել էր այդ ուղևորությանը, հաստատվում է նրա «Ճանապարհորդություն դեպի Արզրում» նոթագրություններով: Այստեղ նա օգտագործել է ռուս և օտարերկրացի ճանապարհորդների և գրողների գրվածքները Անդրկովկասի և Փոքր Ասիայի մասին: Պուշկինի գրադարանում կային Պետերբուրգում և Մոսկվայում ռուսերեն հրատարակված ուրիշ նմանօրինակ գրքեր՝ «Հարություն Արարատյանի կյանքը» (1816 թ.). Ս. Բրոնևսկու «Կովկասի աշխարհագրության ու պատմության նորագույն նյութերը» (1823 թ.): Պուշկինը հավանաբար ծանոթ էր նաև Հ. Շահան-Ջրպետյանի ու Ֆ. Մարտինի «Հետաքրքիր քաղվածքներ Ասիայի հնագույն պատմությունից» (1818 թ.) գրքին, որը ֆրանսերենից ռուսերեն է թարգմանվել Ալ. Խուդաբաշյանի (Պուշկինի քիշինյովյան ընկեր Արտ. Խուդաբաշյանի եղբոր) կողմից, ինչպես նաև Յա. և Դ. Արզանովների «Հայ թագավորության պատմության ուրվագիծը» (1826թ.) գրքերի հետ:

Մինչև Էրզրում կատարած ճանապարհորդությունը, Պուշկինը հայերի հետ շփվել է Պետերբուրգում, Մոսկվայում և հարավ աքսորված ժամանակ: Նա այցելելիս է եղել 1812 թվականի Հայրենական պատերազմի մասնակից գընդապետ Դ. Ս. Աբամելիքյանցի տունը: Հետագայում նրա դստերը՝ Աննային Պուշկինը նվիրել է մի բանաստեղծություն՝ «Ա. Դ. Աբամելիքի ալբոմում»: 20-ական թվականների սկզբին Քիշինյովում նա շփվել է տեղի հայերի հետ, մասնակցել է արքեպիսկոպոս Գրիգոր Զաքարյանի մոտ կազմակերպված պարահանդեսին: Հայերի հետ ունեցած Պուշկինի հանդիպումների հետքերը տեսնում ենք նրա մի շարք ստեղծագործություններում՝ «Եվգենի Օնեգին», «Սև շալ», «Գաբրիելական» և այլն:

Որ Պուշկինը լուրջ է վերաբերվել իր կովկասյան ուղևորությանը, վկայում է նրա արխիվում գտնված երկու ուղերթի գծագիրը՝ Թիֆլիս-Էրզրում և Կարս-Քեփրիքյոյ: Դըրանց հիման վրա հայտնի հայագետ Ստեփան Լիսիցյանը կազմել է Պուշկինի Էրզրում կատարած ճանապարհորդության ճշգրիտ քարտեզը: Առաջին անգամ այն տպագրվել է 1937 թվականին, «Ա. Ս. Պուշկինին» հոբելյանական ժողովածուում: Վերընթերցելով «Ճանապարհորդություն դեպի Արզրում» գիրքը, մենք էլ գնանք Պուշկինի ուղերթով:

1829 թվականի մայիսի 1-ին Պուշկինը Մոսկվայից մեկնեց Կովկաս: Հուզմունքով էր նա ուղևորվում այն երկիրը, որտեղ մեկ անգամ արդեն եղել էր և որպես իր ռոմանտիկ պատանեկության հուշ, նա իր հետ վերցրել էր «Կովկասի գերին» պոեմի ձեռագիրը: Ճանապարհին «մեծ հաճույքով» վերընթերցելով այն, բանաստեղծը խոստովանել է. «Այդ բոլորը թույլ է, դեռահաս, թերատ, բայց շատ բան կռահված և արտահայտված է ճիշտ»: Եվ կարծես վերանայելով իր վաղ շրջանի երկերը, Պուշկինը Էրզրում մեկնելիս և վերադառնալիս ստեղծել է կովկասյան և արևելյան ստեղծագործությունների նոր, ռեալիստական շարք: «Ճանապարհորդության» առաջին գլխում Պուշկինը պատմում է, թե ինչպես է ինքը այցելել մի կալմիկական վրան և հանդիպել չքնաղ կալմիկուհուն, իսկ մայիսի 22-ին Վլադիկավկազում գրել է «Կալմիկուհուն» հիանալի բանաստեղծությունը: Նա այցելել է նաև Վլադիկավկազից ոչ այնքան հեռու գտնվող օսեթական աուլը և ներկա գտնվել հուղարկավորության, որի մասին հիշատակում է «Ճանապարհորդություն» նույն գրքում: Այդ գրառումը Բելինսկուն առիթ է տվել ենթադրելու, որ Պուշկինի անավարտ «Տազիտ» պոեմը եղել է այդ ուղևորության տպավորությունների արդյունքը: Պոեմում արտացոլվել է նաև հայկական թեման՝ «Տեսա ես ապրանքն առած



# ՍՊԵՆԴԻԱՐՅԱՆՑԻՆԵՐԸ

*ԼՅՈՒԴՎԻԳ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*

Երևանի Ալեքսանդր Սպենդիարյանի անվան երաժշտական դպրոցի ամենափոքրիկ սաների հերթական դասն սկսվեց կոմպոզիտորի տուն-թանգարանում: Վաստակավոր ուսուցիչ Արամ Հախնազարյանը հանդիսավորությամբ դիմեց երեխաներին.

— Այսօր՝ մեծ կոմպոզիտորի ծննդյան օրը, նոյեմբերի 1-ին, դուք՝ ամենափոքրիկ սպենդիարյանցիներդ, երդում եք տալու միշտ բարձր պահել հայկական երաժշտության պատիվը, շարունակել նրա փառավոր ավանդույթները:

Փոքրիկների ձեռքերի ծաղիկները խոնարհվում են, և դաշնամուրի վրա մնում են ճերմակ ու ալ վարդեր:

Ամեն տարի սեպտեմբերի 1-ին և նոյեմբերի 1-ին աշակերտներն այցելում են Սպենդիարյանի տուն-թանգարանը: Առաջին դասարանցիների առաջին զանգն այստեղ է հնչում՝ «Սպենդիարյանի դասարանում»: Դպրոցի լավագույն սաներին այդ օրերին իրավունք է տրվում նվագել կոմպոզիտորի դաշնամուրի վրա, կատարել նրա ստեղծագործություններից:

Իսկ երեք տարի առաջ, նոյեմբերին, նրանք հարյուր վարդ բերեցին մեծ կոմպոզիտորի ծննդյան հարյուրամյակի օրը: Հետո աստիճաններից վար իջան, և փոքրիկ պուրակում սկսվեց բացօթյա համերգ:

Տուն-թանգարանից նրանց շարքերը ձգվեցին դեպի Խանջյան փողոցի վրա բարձրացած հոյակերտ շենքը, որի ճակատին ցուցանակ կար՝ «Երևանի Ալեքսանդր Սպենդիարյանի անվան երաժըշտական դպրոց»: Նույն օրը դպրոցի բակում կանգնեցվեց կոմպոզիտորի կիսանդրին, որի հեղինակն է քանդակագործ Ղուկաս Չուբարյանը: Դպրոցի կառուցմանն օգնում էին նաև իրենք՝ աշակերտները: Գեղեցիկ հեմասրահով նրանք մտան դասարանները, փորձասենյակները, փոքր դահլիճից անցան մեծ դահլիճ, ուր նրանց երկար պահեց կոմպոզիտորի քաղցրահունչ երգը:

Ա՜յ վարդ, լսիր աղաչանքիս,
Թույլ տուր թփից քեզ քաղեմ...

Այդ օրը դպրոցի պատմության հուշամատյանում գրվեցին շատ անմոռաց էջեր:

Սպենդիարյանի մահից երկու տարի անց՝ 1930 թվին, մայրաքաղաքի մանկական երաժշտանոցը կոչվեց նրա անունով: Անցան տարիներ, և սպենդիարյանցիները մոտիկ ու հեռավոր բեմերում հյուսեցին հայ երաժշտության փառքի շատ դափնիներ: 2300 շրջանավարտներից շատերի անունները այսօր հայտնի են ամենքին: Առնո Բաբաջանյանի, Ալեքսանդր Հարությունյանի, Էդվարդ Միրզոյանի, Էդգար Հովհաննիսյանի, Ղազարոս Սարյանի, Ադամ Խուդոյանի, Ջիվան Տեր-Թադևոսյանի և հանրահայտ ուրիշ երաժիշտների մանկական լուսանկարները կտեսնեք դպրոցի հուշամատյաններում: Նրանք

*գնում էր թիֆլիսցի հայը»,— պատմում է պատանի Տազիտը ծեր Հասուբին իր լեռնային շրջագայությունների մասին: Բելինսկին պոեմը վերլուծելիս այդ հատվածը մեջ է բերում ամբողջությամբ՝ բացահայտելու համար Կովկասի լեռնականների հետամնաց կյանքի պայմաններում հոր և որդու միջև ծառացած ողբերգական կոնֆլիկտը:*

*Թիֆլիսի ճանապարհին Պուշկինը կանգ առավ փլվածքի մոտ: «Քարի մի ահագին գունդ, վայր գլորվելով մի ամբողջ վերստ տարածությամբ կիրճը լցրել և կտրել էր Թերեքը»: Տեսարանը տըպավորիչ էր, և հետագայում Պուշկինը ստեղծեց իր «Փլվածք»-ը: «Վայրկենական անցումը ահավոր Կովկասից դեպի գեղատեսիլ Վըրաստանը հիանալի է»,— հիացած գրում է բանաստեղծը և այդ օրերին հորինում է իր նույնքան հիանալի «Գիշերային մուժն է իջել Վրաստանի լեռներին» բանաստեղծությունը:*

*Մայիսի 26-ին Պուշկինը հասավ Թիֆլիս, որտեղ մնաց մոտ երկու շաբաթ: Բազմալեզու քաղաքը նըրան հիշեցնում էր Քիշինյովը: «Հայեր, վրացիներ, չերքեզներ, պարսիկներ անկանոն խռնըվել էին հրապարակում...»— գըրում է Պուշկինը «Ճանապարհորդության» երկրորդ գլխի սկզբում և շարունակում է՝ «Թիֆլիսում ազգաբնակչության մեծ մասը կազմում են հայերը: 1825 թվին նրանք այստեղ մինչև 2500 ընտանիք են եղել: Այժմյան պատերազմները, ժամանակ նրանց թիվն ավելի է մեծացել»:*

*Հունիսի 9-ին Պուշկինը դուրս եկավ Թիֆլիսից և ձիով ուղևորվեց դեպի Հայաստան: «Մեկ անգամ ևս նայեցի արևից խանձված Վըրաստանին և սարի թեթև զառիվայր լանջով սկսեցի իջնել Հայաստանի թարմ դաշտավայրերը»: Պուշկինը կանգ է առել Աղջի-Բոյուկի (Լալվար) մոտ: «Պարզվեց, որ հասել եմ մի հայկական գյուղ: Մի քանի կին, հագներին խայտաբղետ ցնցոտիներ, նստած էին գետնափոր խրճիթի տափակ կըտրին: Մի կերպ բացատրվեցի: Նըրանցից մեկն իջավ խրճիթը և ինձ համար պանիր ու կաթ բերեց»: Այսպես են դիմավորել հայերը առաջին անգամ Հայաստանի հինավուրց հողին ոտք դրած Պուշկինին:*



սպենդիարյանցիներ են: Չեն մոռանում հարազատ տունը, հաճախ են գալիս, հանդիպում իրենց «փոքրիկ կոլեգաների» հետ, լսում նրանց երգը, ծափահարում:

Սպենդիարյանցիներին շնորհվել են բազմաթիվ պատվոգրեր, դիպլոմներ ու հուշանվերներ միութենական մրցույթներում, Անդրկովկասյան երաժշտական դպրոցների փառատոներում ու ստուգատեսներում, հանրապետական տոնահանդեսներում: Ամենատարբեր դահլիճներում ունկնդրել են դպրոցի մանկական երգչախմբի, լարային նվագախմբի, դաշնամուրային եռյակի և երաժշտական բազմաթիվ այլ խմբերի մենակատարների ելույթները, հրճվել պատանի երաժիշտների արվեստով:

— Իսկ այս պատվոգիրը ստացել ենք Կախովկայում՝ Սպենդիարյանի ծննդավայրում, համերգային մրցույթի ժամանակ,— ասում է թավջութակահարուհի Անահիտ Մկրտչյանը:

Անցյալ տարի Անահիտը, քանոնահարուհի Սուսաննա Հակոբյանը, դաշնակահարուհի Անահիտ Բաղդասարյանը, դպրոցի ուրիշ շնորհալի սաների հետ մասնակցեց նաև Մոսկվայի պատանի երաժիշտների փառատոնին, և վերադարձան հաղթողի դափնիներով:

Մինսկի բարեկամության փառատոնը նույնպես անմոռանալի մնաց:

— Մենդելսոն, «Կոնցերտ», կկատարի Երևանի Սպենդիարյանի անվան դպրոցի աշակերտուհի Լիանա Վարդանյանը:

Չդադարող ծափերին հաջորդեց Բաբաջանյանի «Վաղարշապատի պարը»: Բելոռուսիայի կուլտուրայի մինիստրության պատվոգիրը այդ հաղթական օրվա գեղեցիկ վկան է:

Պատանի երաժիշտները մրցանակներ են շահել նաև Բաքվի, Թբիլիսիի փառատոներում:

Սպենդիարյանցիները պատրաստվում են երաժշտական դպրոցների հանրապետական ստուգատեսին: Դա պատանի երաժիշտների ավանդական տոնն է: Հաղթողներին ճանապարհը նորից կուղեկցի կանաչ պուրակ: Աստիճանները վեր կտանեն, և տուն-թանգարանի սրահում կրկին կղողանջեն ծանոթ հնչյունները:

Հետո գարնան ճանապարհը նրանց հարազատ դպրոց կտանի, և հուշամատյանում կգրվի փառքի մի նոր էջ անվանի կոմպոզիտոր Ալեքսանդրա Պախմուտովայի այս գրառման կողքին. «Մեծ կոմպոզիտոր Ալեքսանդր Սպենդիարյանի անվան դըպրոցի սաները հիացրին ինձ: Հավատում եմ, որ նրանց ուժերով հայ երաժշտության փառքի մատյանում կհավերժանան շատ պայծառ հնչյուններ»:

---

*Ջալալօղլուց (Ստեփանավան) Գյառգյառ տանող ճանապարհին հունիսի 10-ին Պուշկինը հանդիպեց սպանված Գրիբոյեդովի դին Թեհրանից Թիֆլիս տեղափոխող սայլին: Եվ նրա հոգում արթնացան հիշողությունները:*

*Այդ վայրից ոչ հեռու հիմա մի աղբյուր-հուշարձան է կանգնած ու ամեն անցորդի հիշեցնում է երկու ռուս բանաստեղծների կսկծալի հանդիպումը:*

*Անցնելով Բզովդալը (հիմա դա կոչվում է Պուշկինյան լեռնանցք) Պուշկինը իջավ հովիտ և հանքային ջրի աղբյուրի մոտ հանդիպեց մի հայ տերտերի, որ Երևանից գնում էր Ախալցխա: «Ի՞նչ նորություն կա Երևանում»,— հարցրի ես նրան: «Երևանում ժանտախտ է»,— պատասխանեց նա:— «Իսկ ի՞նչ լուր Ախալցխայից»,— «Ախալցխայում ժանտախտ է»,— պատասխանեցի նրան: Փոխանակելով սույն «հաճելի» լուրերը, մենք բաժանվեցինք»: Ախալցխայում Պուշկինը չէր եղել և տերտերին, հավանաբար, պատասխանել էր կատակով: (Նուրբ հումորով են տոգորված «Ճանապարհորդության» շատ էջեր):*

*Պերնիկի (Համամլու) տանող ճանապարհի մասին Պուշկինը գըրել է. «Առաջանում էի բերրի արտերի ու ծաղկափթիթ մարգագետինների միջով: Հունձը ծորում էր, սպասելով մանգաղի: Ես հիանում էի այս սքանչելի հողով, որի բերրիությունը Արևելքում առելիք էր դարձել»: Պուշկինը ճանապարհը շարունակեց հորդ անձրևի տակ: Հունիսի 11-ին, կեսգիշերին մոտ նա հասավ Գյումրի (Լենինական): Գիշերեց կոզակների մոտ: Առավոտյան նրան արթնացրին. «դուրս եկա վրանից առավոտյան թարմ օդ ծծելու: Արևը ծագում էր: Պարզ երկնքի վրա սպիտակին էր տալիս ձյունապատ, երկգլխանի մի սար: «Այդ ի՞նչ սար է»,— հարցրի ճմլկոտելով և լսեցի պատասխանը.— Դա Արարատն է:— Որքան զորավոր է հնչյունների ներգործությունը: Ագահաբար նայում էի բիբլիական սարին, տեսնում էի տապանը, որ կանգ էր առել նրա գագաթին՝ նորոգման ու կյանքի հույսով, և դուրս թռչող ագռավն ու աղավնին, պատժի և հաշտության սիմվոլներին...»*

*Բայց կոզակը սխալ էր տեղեկացրել Պուշկինին: Դա ոչ թե Ա-*

րարատն էր, այլ՝ Արագածը (Ալագյազը): «Ճանապարհորդության» տեքստի այդ սխալի մասին դեռևս 1937 թվականին գրել է Ս. Լիսիցյանը: Սակայն այդ պատահական սխալին ենք պարտական, որ Պուշկինը՝ առաջիններից մեկը ռուս գրականության մեջ գրել է Արարատի մասին, որի մասին գիտեր գրքերից Գրիբոյեդովի ու Դ. Դավիդովի պատմածներից:

Հունիսի 12-ի առավոտյան ուղեկցողի հետ Պուշկինը մեկնեց Կարս: «Առավոտը հիանալի էր: Արևը փայլում էր: Մենք գնում էինք լայն մարգագետնով, ցողով ու երեկվա անձրևի կաթիլներով ողողված խիտ կանաչ խոտի վրայով: Մեր առջև փայլում էր մի գետակ, որ պետք է անցնեինք: «Ահա և Արփաչայը»,— ասաց ինձ կոզակը: Արփաչա՜յը, մեր սահմա՜նը: Դա արժեր Արարատին: Ես սուրացի դեպի գետը մի անմեկնելի զգացմունքով»:

Հայկական գյուղում ճաշելով, նա շարունակեց իր ճանապարհը «ամայի Հայաստանում»: Երեկոյան Պուշկինը Կարս հասավ: Նրան իր մոտ հրավիրեց «մի երիտասարդ հայ... խոսելով բավականին մաքուր ռուսերեն... ցածր բազկաթոռներով և հին գորգերով կահավորված սենյակում նստած էր մի պառավ կին՝ նրա մայրը: Կինը մոտեցավ ինձ և համբուրեց իմ ձեռքը: Որդին պատվիրեց նրան կրակ անել ու ինձ համար ընթրիք պատրաստել: Ես հանվեցի ու նստեցի կրակի մոտ: Ներս մտավ տանտիրոջ փոքր եղբայրը, մոտ 17 տարեկան մի տղա: Երկու եղբայրն էլ եղել էին Թիֆլիս... Շուտով պառավն ինձ համար սոխով ոչխարի միս պատրաստեց, որն ինձ թվաց խոհարարական արվեստի գագաթնակետը: Մենք բոլորս պառկեցինք միևնույն սենյակում: Ես պառկեցի մարող բուխարու դիմաց ու քնեցի...»

Առավոտյան Պուշկինը տղաներից կրտսերի՝ Արտեմի հետ գնաց տեսնելու ազատագրված Կարսը: «Նկատելով նրա ձգտումը դեպի պատերազմը,— գրում է Պուշկինը Արտեմի մասին,— ես նրան առաջարկեցի ինձ հետ գնալ բանակ: Նա սիրով համաձայնեց»:

Որոշ ժամանակ անց Պուշկինը գրեց «Ճամբարը Եփրատի մոտ» աստղանիշով բանաստեղծությունը երիտասարդ կովկասցի զինվորականի մասին: Կարծես ջուր լցնելով պատանու ոգևորության վրա, բանաստեղծը ասում էր.

«Не пленяйся бранной
славой,
о красавец молодой...»

Հունիսի 13-ին Ղարսչայի ափին Պուշկինը վերջապես հասավ ռուսական բանակի ճամբարին և նրա հետ կատարեց «փայլուն արշավանք, որը պսակվեց Արզրումի գրավմամբ»:

Այդ օրերին նա հանդիպեց իր մանկության և պատանեկության ընկերներին՝ աքսորված դեկաբրիստներին կամ էլ «գաղտնի ընկերություններին» հարող անձանց՝ Ն. Ն. Ռաևսկուն, Ի. Գ. Բուրցովին, Մ. Ի. Պուշչինին, Վ. Դ. Վոլխովսկուն, Ն. Ն. Սեմիչևին, Վ. Դ. Սուխարուկովին և այլոց: Ն. Ռաևսկուն Պուշկինը նվիրել է իր «Կովկասի գերին» պոեմը և «Անդրեյ Շենյե» բանաստեղծությունը: Ն. Ռաևսկին և Մ. Պուշչինը մասնակցել են նաև Երևանի գրավմանը: «Այստեղ տեսա նաև Միխայիլ Պուշչինին, որն անցյալ տարի վիրավորված էր: Նա սիրված էր ու հարգված որպես հիանալի ընկեր և քաջ զինվոր»: Դեկաբրիստները այդ իրադարձությունների փառապանծ հերոսներն էին, և Պուշկինը չէր թաքցնում նրանց նկատմամբ ունեցած իր վերաբերմունքը:

Պուշկինն ինքն էլ անձնական մասնակցություն է ունեցել թուրքերի դեմ մղված ճակատամարտին: «Ճանապարհորդության» ճակատամարտը պատկերող տեսարանները նկարագրված են ականատեսի, ոչ թե կողմնակի դիտողի կողմից: Օրինակ, նա մանրամասն նկարագրում է թուրքական հեծելազորի դեմ գեներալ Ն. Ռաևսկու գնդի մղած ճակատամարտը: Հետագայում այդ թեմայով Պուշկինը գրում է «Դելիբաշ» բանաստեղծությունը: Ահա և արշավանքի նկարագրության վերջին մասը. «Մեր զորագնդերը գնացին դեպի Արզրում, և հունիսի 27-ին, Պոլտավայի ճակատամարտի տարեդարձի օրը, երեկոյան ժամը 6-ին ռուսական դրոշը ծածանվում էր Արզրումի միջնաբերդի վրա... Մենք մտանք քաղաքը, որը զարմանալի տեսարան էր ներկայացնում: Թուրքերն իրենց տափակ կտուրներից մռայլ նայում էին մեզ: Հայերն աղմկելով վխտում էին նեղ փողոցներում: Նրանց տղաները վազում էին մեր ձիերի առջևից, խաչակնքելով ու կրկնելով. «Քրիստիա՜ն, քրիստիա՜ն...» Մենք մոտեցանք բերդին, ուր մուտք էր գործում մեր հրետանին: Մեծ զարմանքով ես այստեղ հանդիպեցի իմ Արտեմին, որն արդեն շրջագայում էր քաղաքում, չնայած խիստ հրամանին, որ ոչ ոք ճամբարից չբացակայի առանց հատուկ թույլտվության»:

Այսպես է Պուշկինը պատկերել հայ պատանու՝ Արտեմի կերպարը, որը ռուսական բանակի շարքերում կռվում էր թուրքերի դեմ:

Մարիետա Շահինյանը խորհրդածելով նրա ճակատագրի շուրջն իր «Խաչատուր Աբովյան» հոդվածում (1958 թվական), գրում է. «Այդ պատանին՝ Պուշկինի իրական ուղեկիցը, երկու տասնամյակ անց հարություն առավ Խաչատուր Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպի գլխավոր հերոս՝ Աղասու կերպարում:

Պուշկինը վերադարձավ իրեն արդեն ծանոթ ճանապարհով: Գյումրիում ստիպված 3 օր կանգ

# ՓՈՔՐԻԿ ՄԻ ԱՂՋԻԿ

ԳԵՎՈՐԳ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Փոքրիկ մի աղջիկ,
Խաղալիքների շրջապատման մեջ,
Իր սիրած երգն էր երգում անընդմեջ.
— Թող արևը միշտ շողա երկնքում,
Ու անամպ լինի երկինքը ընդմիշտ,
Թող մայրս լինի, ու լինեմ միշտ ես...
Եվ շարունակ նույն երգը երգելուց
Հոգնեց ու քնեց
Խաղալիքների շրջապատման մեջ:

# ՄԵՂՈՒՆ ՈՒ ԴԺՆԻԿԸ

ՍԻՄՈՆ ՀԱԿՈԲՅԱՆ

Փոքրիկ մեղուն դեղնածաղկից
Նեկտար ծծեց, ուրախ բզզաց,
Տեսավ Դժնիկն ու նախանձից
Հոխորտալով այսպես ասաց.
—Իմ նեկտարից, ինչո՞ւ, ասա՛,
Քո փեթակը դու չես տանում,
Ի՞նչ է, պիտի աղաչեմ, հա՞,
Թե՞ իմ տեղը չես իմանում:—
Մեղուն խոսեց.— Օ՛, չա՛ր Դժնիկ,
Անխր թույն ես դու քո տեղով,
Եթե նեկտար առնեմ քեզնից,
Մարդ կսպանեմ ես այդ մեղրով:

# ՑԱՆԿԱՊԱՏԸ

ՀԵՆՐԻԿ ԱՎԵՏԻՍՅԱՆ

Ցանկապատին՝ ծուռտիկ ու հին
Բաղեղները բարձրացան
Ու ծաղկեցին փոված չորս դին
Երանգներով բազմազան:
— Սիրուն պատ է,— շշնջացին
Անցորդները հիացած:
Լսեց պատը ու բաղեղներին
Հանդիմանեց բարկացած.
— Ի՛նչ եք ելել վրաս թառել,
Ծածկել տեսքս գեղեցիկ,
Օձերի պես ինձ փաթաթվել
Ու չեն տեսնում ինձ մարդիկ:—
Բաղեղները խոսք չասացին
Նախատինքն այդ լուռ տարան:
Անցան օրեր... աշնան շեմին
Երբ չորացած վայր ընկան,
Բացվեց նորից նախկին տեսքով
Ցանկապատը ծուռտիկ, հին,
Զուր սպասեց գովեստների,
Դուր չէր գալիս ոչ մեկին:

առավ: Մոլեգնում էր ժանտախտը, կարանտին էր:

Պուշկինի ծննդյան 175-ամյա տոնակատարության օրերին Լենինականում բացվեց աղբյուր-հուշարձան՝ հայ ժողովրդի հարգանքի տուրքը մեծ բանաստեղծին:

Էրզրում կատարած ճանապարհորդությունից վերադառնալուց հետո Պուշկինը Կովկասյան տըպավորությունների հիման վրա գրեց նաև մի քանի բանաստեղծություններ՝ «Մենաստանը Կազբեկի վրա», «Դոն», «Օլեգի վահանը», «Ճանապարհային գանգատներ» և նշանավոր «Կովկասը»: 1830 թվականին «Լիտերատուրնայա գազետա» լրագրում տպագրվեց Պուշկինի ճամփորդական գրառումներից մի հատված: Իսկ 1836 թվականի սկզբին «Սովրեմեննիկ» ամսագրում տպագրըվեց «Ճանապարհորդություն դեպի Արզրում»-ը: Բելինսկին գրել է. որ Պուշկինի այդ ստեղծագործությունը «անհնար է կարդալ առանց հիացմունքի, անհնար է կիսատ թողնել, եթե սկսել ես»: Ժամանակակիցների վկայությամբ «Ճանապարհորդություն դեպի Արզրում» ստեղծագործության հրատարակումից անմիջապես հետո, Մկըրտիչ Էմինը Մոսկվայի Լազարյան ճեմարանում հայոց լեզվի դասաժամերին կարդում էր այն իր աշակերտների համար:

«Ճանապարհորդության» առաջաբանում Պուշկինը գրել է. «Ոգևորությունը չես գտնի, նա ինքը պետք է գտնի բանաստեղծին»: Եվ ոգևորությունը գտավ նրան: «Ճանապարհորդությունը» ոգեշունչ ստեղծագործություն է հայ ժողովրդի ճակատագրի համար բախտորոշ պատմական իրադարձությունների մասին, հիանալի գրական հուշարձան:

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

# Ա Շ Ո Ւ Ն

Հողի վրա ու ջրերին
Խոնջություն է իջնում,
Դողի մեջ է սալորենին
Ստվերախիտ կիրճում:

Սառը քամին հպարտ բարդուն
Փետրահան է անում.
Ու բարդին էլ ինքն է ջարդում
Անօրսալի քամուն:

Հոպիտները դեղնած ու մերկ
Մրսփում են խաղաղ,
Ճամփաներն են խոնավ ու լերկ
Ձգվում միապաղաղ...

# ՀԱՅՐԵՆԻ ՋՐԵՐ

Այն ի՞նչ ջրեր են վարար ու եկման
Ժայռերը սրբում լեզուներով թաց,
Որ կածաններով նեղլիկ ու կեռման
Վազում են դեպի հովիտները բաց,
Որ քաղցրակարկաչ տատրակի նման
Երգում են, թռվում՝ լարերը պրկած,
Որ արևակեզ օրերին ամռան
Բուժում են այրվող սրտերը մարդկանց,
Որ մտնում են լայն շեները համայն
Ոսկի խաղողին ու հացին խառնված...

Հայոց ջրերն են այդպես կաթնահամ
Լեռներից հորդում թարմ շնչով գարնան...

ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱՐՓԻԿ
Երևան, № 89 դպր. 10-րդ դաս. աշ.

# ՏՈՒՆ, ՈՐ ՄԻՇՏ

Երևանի մանկական պատկերասրահը ամենակըրտսեր նկարիչների հասակակիցն է: Բայց նա նման է հեքիաթային հրաշք այն մանուկին, որը ոչ թե տարեցտարի է մեծանում, այլ՝ օրեցօր: Պատկերասրահի հռչակըահա այդպիսի արագությամբ տարածվել է աշխարհում: Մի քանի տարում կատարած նրա աշխատանքները, բոլոր անհատական, համամիութենական ու միջազգային ցուցահանդեսները, միայն զարմանք ու հպարտություն կարող են առաջացնել: Պատկերասրահի տպավորությունների մատյանի ամեն մի էջում հանդիպում ենք «Շնորհակալություն» բառին: Այդ բառը գրված է հայերեն, ռուսերեն, վրացերեն, գերմաներեն, անգլերեն, չեխերեն, ճապոներեն, շվեդերեն և շատ ու շատ ուրիշ լեզուներով:

Այս տարի նույնպես պատկերասրահը կազմակերպել է մի շարք բազմազան ու գրավիչ ցուցահանդեսներ: Միայն առաջին վեց ամսում բացվել են տասնհինգ հանրապետությունների պատանի նկարիչների մասնակցությամբ՝ համամիութենական. մեր մայրաքաղա-



# ԱՄՊԻԿԸ

Լողում է ամպիկը, սահում է ամպիկը,
Կապույտ անկողնում ննջում է ամպիկը,
Փափուկ ներքնակը գրկել է ամպիկը,
Ինչպես առագաստ՝ լողում է ամպիկը:

Արևի շողից զարթնում է ամպիկը,
Վճիտ ծովակում խաղում է ամպիկը:
Լողում է ամպիկը, խայտում է ամպիկը
Ու ջինջ երկնքում ժպտում է ամպիկը:

# ԿԱԹԻԼ

Անձրևից հետո մի առվակ ծնվեց,
Արևը զարթնեց, հրճվանքից փայլեց:
Ժպտաց, ծիծաղեց, կապեց ծիածան,
Ջրի կաթիլները ո՞ւր աներևացան:

ՀԱԿՈԲՅԱՆ ՆԱՐԻՆԵ
Երևան, Ղ. Աղայանի անվ. դպր.,
7-րդ դաս. աշ.

# ՁԵԶ ՀԵՏ Է:

քի առանձին դպրոցների աշակերտների, Հարավսլավիայի և Ուրուգվայի երեխաների, իննամյա ուկրաինուհի Յանա Սաֆարովայի և հնգամյա երևանցի Արմեն Սամվելյանի ցուցահանդեսները, որոնք մեծ հաջողություններ են ունեցել: Արդեն ավանդույթ է դարձել գունավոր կավիճներով ասֆալտի վրա նկարելու մրցությունը, որ ամեն տարի անցկացվում է մայիսի քսանին, օպերայի և բալետի թատրոնի հրապարակում:

Երեխաների պաշտպանության օրվա առթիվ, հունիսի մեկին, մանկական պատկերասրահում բացվեց «Թող լինի միշտ արևը» միջազգային ցուցահանդեսը: Ներկայացված էին սոցիալիստական ութ երկրների երեխաների նկարները: Այնքան էլ մեծ չէր այս ցուցահանդեսը, բայց այնուամենայնիվ, պատկերացում էր տալիս, թե ինչպես են ապրում, ինչ են սիրում ու երազում ձեր հեռավոր ընկերներն ու բարեկամները: Նկարների ամենաբնորոշ կողմը կենսախնդությունն էր, աշխարհն ու մարդկանց ճանաչելու բերկրանքը:



Միաժամանակ նկարներն իրարից տարբերվում էին թեմայով ու կատարմամբ: Ամեն մեկը նկարել էր այն, ինչ նրան ավելի էր հրապուրել և օգտագործել էր իր նախասիրած գույները, հաղորդել իր մտքերն ու տրամադրությունները: Այդ պատճառով էլ, չնայած երբեմըն նույն բանն էին նկարել տարբեր երկրներում ապրող երեխաները, սակայն նրանք չէին կրկնել իրար, այլ ստեղծել էին ինքնատիպ գործեր: Նկարներից երևում էր, թե ինչքան ուշադիր են նրանք շրջապատի նկատմամբ, ինչ նրբությամբ են հասկանում և վերարտադրում այդ բոլորը: Իսկ նկարիչներին հետաքըրքրել էր ամեն ինչ. բնությունը և դպրոցը, գյուղական աշխատանքները և գազանանոցը, սպորտը և տիեզերագնացները:



Երեխաները գիտեն, որ երջանիկ մանկության համար անհրաժեշտ է խաղաղ կյանք: Ահա թե ինչու շատ էին խաղաղությանը նվիրված նըկարները: Նկարիչները հավատում են, որ խաղաղությունը միշտ կհաղթի, և ցուցահանդեսի վերնագիրն էլ այդ էր հաստատում. «Թող լինի միշտ արևը»:

Մի քանի օր անց մանկական պատկերասրահում կազմակերպվեց մի ուրիշ հետաքրքիր ցուցահանդես. «Իտալիան հայ երեխաների նկարներում»: Այս ցուցահանդեսը պատահական չէր: Հայ երեխաները ծանոթ են Իտալիայի պատմությանը, արվեստին ու գրականությանը, գիտեն, որ նա աշխարհի գեղեցիկ երկրներից մեկն է և աշխարհին տվել է շատ մեծ նկարիչներ: Նրանք իրենց սերն ու գիտելիքները արտահայտում են նկարների օգնությամբ. նկարել են աշխատասեր ու բարի մարդկանց, կապույտ երկինքն ու հրաշալի քաղաքները, կանաչ լեռներն ու ջինջ ջրանցքները: Կարելի էր կարծել, թե այդ նկարների հեղինակները ոչ թե Անդրանիկը, Սեդրակը, Գայանեն, Վարդանը, Հայկանուշը, Հրաչիկը, Շուշանիկը կամ Հովիկն են, այլ իտալացի երեխաները: Ցուցահանդես այցելեցին այդ ժամանակ Երևանում գտնվող իտալացի արվեստագետները: Նրանք զարմացած ու հարգանքով նայում էին յուրաքանչյուր նկար և ասում.

— Անհավատալի է, որ փոքրիկ հայ նկարիչները չեն եղել մեր երկրում: Ինչպե՞ս են հապա այսքան հարազատ զգացել Իտալիան:

Փոքրիկ նկարիչները բացատրում էին, պատմում իրենց մասին: Իտալացիները ժպտում էին ու շնորհակալություն հայտնում:

Հիմա այս բոլորը անցյալ է: Մանկական պատկերասրահը պատրաստվում է նոր ցուցահանդեսների: Համոզված ենք, որ ամեն մի նոր ցուցահանդես նոր ուրախություն կբերի, և անհամբեր սպասում ենք այդ տոնական օրվան:

ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑ

*Այս տարի՝ սեպտեմբերին լրացավ նախկին խոշորագույն ուսումնական հաստատություններից մեկի՝ Գևորգյան ճեմարանի հիմնադրման 100-ամյակը։*

*Ճեմարանի հետ կապված են շատ նվիրական անուններ՝ Կոմիտաս, Եկմալյան, Աճառյան, Մանանդյան, Դեմիրճյան, Իսահակյան, Լևոն Շանթ, Հովհաննես Հովհաննիսյան, Ղազարոս Աղայան, Ստեփան Կանայան, Մինաս Բերբերյան, Կարապետ Տեր-Մկրտչյան, նույնիսկ դժվար է բոլորին թվել։*

*Խմբագրությունը խնդրեց ճեմարանավարտ, վաստակաշատ դասախոս, այժմ կենսաթոշակառու, պրոֆեսոր Խաչատուր Կանայանին պատմել ճեմարանական տարիների իր հուշերը։*

# Գ Ե Վ Ո Ր Գ Յ Ա Ն  Ճ Ե Մ Ա Ր Ա Ն

*ԽԱՉԱՏՈՒՐ ԿԱՆԱՅԱՆ*

Ճեմարան ընդունվել եմ 1896 թվականի աշնանը։ 1895 թվականից ցարը փակել էր բոլոր հայկական դպրոցները և թողել միայն Գևորգյան ճեմարանը, ուստի բազմաթիվ պատանիներ Հայաստանի բոլոր ծայրերից լցվել էին ճեմարանի բակը, խռնված սպասում էին քննություններին։ Ես արդեն ավարտել էի Իգդիրի ծխական երկդասյա դպրոցը և եղբայրս՝ պատմաբան-բանասեր Ստեփան Կանայանը, որը դասավանդում էր ճեմարանում, ինձ նախապատրաստել էր քննություններին։ Այդ ժամանակ ճեմարանը 22 տարի էր, ինչ գոյություն ուներ և հիմնադրման առաջին օրից այնտեղ դասավանդում էին բոլոր տեղերից հրավիրված անվանի հայ գիտնականները՝ Կարապետ Կոստանյան, Սեդրակ Մանդինյան, կաթողիկոստանն Կիլիկիո Գարեգին Հովսեփյան, որը խոշոր գիտնական էր և հայկական մանրանկարչության մասին արժեքավոր ուսումնասիրության հեղինակը, ճեմարանավարտ և Եվրոպայում ուսանած Եզնիկ Գյանջեցյանը։

Ճեմարանը թեև ռուսական պետական օրենքով կոչվում էր հոգևոր ճեմարան, աշխարհիկ էր ինքնունինը տոկոսով։ Սովորում էինք ֆիզիկա, քիմիա, աստղագիտություն, գրականություն, պատմություն, լեզուներ՝ ռուսերեն, գերմաներեն, հունարեն, արևմտահայերը՝ նաև թուրքերեն, օգտվում էինք ճեմարանի հարուստ գրադարանից, իսկ լսարանական բաժնի ուսանողները՝ նաև ձեռագրատնից, որը գտնըվում էր Էջմիածնում։ Հետագայում այն տեղափոխվեց Երևան և կոչվեց Մատենադարան։ Դասարանական բաժինը վեցամյա էր, իսկ բարձրագույնը՝ լսարանականը՝ երեք տարվա տևողությամբ։

Ճեմարանական ինը տարիների ընթացքում ես աշակերտել եմ Խաչատուր Աբովյանի որդուն՝ Վարդան Աբովյանին։ Ես բախտ եմ ունեցել աշակերտելու Հակոբ Մանանդյանին, Գարեգին Հովսեփյանին, Գարեգին Լևոնյանին, մաթեմատիկոս Տերյանին, բանաստեղծ Հովհաննես Հովհաննիսյանին, որը դասավանդում էր բացարիկ մաքուր ու գեղեցիկ հայերենով։ Ճեմարանում երկարամյա տեսուչ էր հայտնի հայկաբան Կարապետ Կոստանյանը. Սակայն ճեմարանի ոգին էր մեծ երաժըշտագետ անմահ Կոմիտասը։ Կոմիտասը շատ էր սիրված աշա-



ԵՐՎԱՆԴ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆ



ԽԱՉԱՏՈՒՐ ԿԱՆԱՅԱՆ



ԱՌԱՔԵԼ ԱՌԱՔԵԼՅԱՆ



ԱՎԵՏԻՍ ՃՈՒՂՈՒՐՅԱՆ

կերտության կողմից: Դասերի ժամանակ նա խիստ էր ու պահանջկոտ, դասերից դուրս անմիջական էր, մարդամոտ, կատարյալ ընկեր էր: Կոմիտասը երգչախումբ ուներ, որը բոլոր տոներին հանդես էր գալիս ճեմարանի հանդիսարանում: Ճեմարանում տոնում էին գրեթե բոլոր ազգային տոները: Զատկի և Ծննդի տոներին հաճախ գնում էինք շրջակա գյուղերը՝ Աշտարակ, Իգդիր, Օշական և այլն, դասախոսություններ և երեկույթներ կազմակերպում:

Ամեն տարի Թարգմանչաց տոնին ոտքով Էջմիածնից գնում էինք Օշական՝ երկրպագելու Մաշտոցի շիրմին: Դասախոսների գլխավորությամբ հաճախ գնում էինք շրջագայելու Հայաստանի տեսարժան վայրերը՝ Գառնի, Գեղարդ, Խոր Վիրապ, Սևան: Մենք կապ էինք պահպանում Վաղարշապատի աղջիկների ընկերության և Երևանի ռուսական գիմնազիայի աշակերտների հետ: Մասնակցում էինք նրանց կազմակերպած երեկույթ-երեկույթներին: Ճեմարանի ղեկավարությունը և բոլոր աշխատողները մեծ հոգատարություն էին ցուցաբերում դեպի սաները: Ճեմարանի սպասավորները Արևմտյան Հայաստանից էին՝ Մոկաց աշխարհից: Իմ հիշողության մեջ առանձնապես լավ է մնացել նրանցից մեկը՝ լսարանական բաժնի գիշերապահ Նախո քեռին, նույն այն Նախո քեռին, որից Մանուկ Աբեղյանը գրի է առել «Սասունցի Դավթի» դրվագները: Երեկոները մենք հավաքվում էինք պատշգամբում, լսում էինք նրա երգերը Սասունցի Դավթի մասին, իսկ գիշերները հսկում էր ննջարաններում, որ հանկարծ մեկնումեկը չբացվի, չմրսի: Ճեմարանի երիտասարդ սպասավորներին լսարանական բաժնի ուսանողներս դաս էինք տալիս, և նրանք իրենց երկիրը՝ Արևմտյան Հայաստան վերադառնալով դառնում էին ուսուցիչներ: 1896 թվականին առաջին դասարան ընդունվեցինք 36 հոգի, իսկ 1905 թվականին, երբ ավարտեցինք ճեմարանը, մնացել էինք ինը հոգի, և մեզնից ոչ մեկը չդարձավ հոգևորական: Ճեմարանում կրթություն էին ստանում ոչ միայն Արևելյան, այլև Արևմտյան Հայաստանի շատ վայրերից, Ռուսաստանի հայաշատ կենտրոններից, Պարսկաստանից, արտասահմանից եկած շատ պատանիներ: Ավարտելուց հետո նրանք գնում էին հայաշատ կենտրոնները, հայկական գյուղերը, իրենց նվիրում էին ուսուցչության: Ճեմարանավարտները զբաղվում էին նաև գիտական, գրական գործունեությամբ և վարում զանազան հասարակական աշխատանքներ: Հետագայում, երբ հիմնադրվեց Երևանի պետական համալսարանը, դասախոսների մեծամասնությունը ճեմարանցիներ էին: Ճեմարանցիներ էին աշխատում խմբագրություններում, դպրոցներում: Ճեմարանում հատկապես լավ էին անցնում օտար լեզուներից գերմաներենը, և ճեմարանում սովորած գերմաներենով Թադևոս Ավդալբեգյանը թարգմանեց Մարքսի «Կապիտալը»:

Ճեմարանը անգնահատելի դեր կատարեց մեր ժողովրդի լուսավորության սրբազան գործում: Մի քանի տարի է, ինչ կազմակերպվել է ճեմարանականների կամավոր ընկերություն՝ Ավետիս Ճուղուրյանի նախագահությամբ: Տարիներն անցնում են ու, ավա՜ղ, ճեմարանավարտների խումբը գնալով ավելի է նոսրանում[1]:

Ամեն տարի, սեպտեմբերյան մի արևոտ օր, ուխտագնացության պես գնում ենք Էջմիածին՝ ճեմարան: 95-ամյա դոկտոր-պրոֆեսոր Երվանդ Տեր-Մինասյանը, 88-ամյա դոկտոր-պրոֆեսոր Առաքել Առաքելյանը, Ավետիս Ճուղուրյանը, էլի ուրիշներ, ես, որ արդեն բոլորել եմ կյանքիս 92 տարին, գնում ենք վերհիշելու մեր պատանեկությունը:

[1] Ճեմարանականների սակավաթիվ խումբն այս սեպտեմբերին Էջմիածին կգնա ավելի նվազած. մեկ ամիս առաջ մահացավ նաև բազմավաստակ գիտնական և մանկավարժ, բանասիրական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Երվանդ Տեր-Մինասյանը: (Մ. Խ.)

# ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



# ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

## ՊԱՏԱՆԻ ԲՆԱՍԵՐՆԵՐԸ

Գառնիի նորակառույց դպրոցը գտնվում է դեպի պատմական Գեղարդ ձգվող ճանապարհի եզրին: Դպրոցի բարձր դասարանների բոլոր աշակերտները, ինչպես նաև բոլոր ուսուցիչները բնության պահպանության ընկերության անդամներ են:

Բնագիտության և բուսաբանության ուսուցիչների ղեկավարությամբ բարձր դասարանցիները հաճախակի արշավներ են կազմակերպում դեպի պատմական Խոսրովի անտառը և այլ վայրեր: Այստեղ, բնության գրկում հատուկ հոգատարությամբ շրջապատված ապրում են բազմաթիվ կենդանիներ և վայրի գազաններ, բծավոր եղջերուներ, քարայծեր, վարազներ, արջեր, աղվեսներ, նապաստակներ, ինչպես նաև թռչուններ: Փարթամորեն աճում են վայրի խնձորենիներ, տանձենիներ և բազմաթիվ այլ ծառատեսակներ: Միայն այս տարի աշակերտները պատվաստել են 55 վայրի խնձորենիներ: Իսկ տանձենիները պատվաստել են տեղական հայտնի մալաչա, ինչպես նաև ձմեռային տանձի տեսակներով: Պատվաստած ծառերի կտրոնները բերվել են Մարտունու շրջանի Ծովինարի պետական տնկարանից:

Դպրոցի պատանի բնասերնե-

րը մի քանի տարի է, ինչ կապ են պահպանում Կրասնոդարի երկրամասի Շեդուկ գյուղի դպրոցի աշակերտների հետ: Երկու տարի առաջ գառնիեցի երեխաները Կրասնոդարի իրենց պատանի բարեկամներին ուղարկեցին մոտ 500 հատ «Հայկիսի» խաղողի վազի կտրոններ, ինչպես նաև մի քանի տեսակ ծաղիկների սերմեր: Կրասնոդարից ստացվեց Դեբայրո կոչված լոլիկի սերմ և այժմ դպրոցամերձ հողամասում լոլիկի ցանքատարածությունը ավելի քան մեկ և կես հեկտար է: Ստացված առատ բերքից երեխաները ուղարկեցին Երևանի ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդես... Իսկ վրացի պատանի բնասերների ուղարկած կարմիր եգիպտացորենի սերմերից աճեցին բույսեր, որոնց կողրերի երկարությունը հասնում է մինչև 67 սանտիմետրի:

Անցյալ տարվա բերքի գումարով դպրոցը ձեռք բերեց բեռնատար ավտոմեքենա, դպրոցի կարիքների, ինչպես նաև աշակերտներին ուսուցանելու նպատակով:

Ամեն տարի մարտի 15—30-ը պատանի բնասերները հայտարարում են «Թռչունի շաբաթ»: Դպրոցում տեղի են ունենում զեկուցումներ, զրույցներ «Մեր թևավոր բարեկամները» թեմայով, հրատարակվում են պատի թերթեր, ինչպես նաև պատրաստում ու տեղադրում են թռչունների բներ՝ բակերում և անտառներում: Ամեն տարի Լենինի ծննդյան օրը՝ ապրիլի 22-ին անց է կացվում «Անտառի պահպանության շաբաթ»: Այդ օրը դպրոցի սիրելի հյուրն է Խոսրովի պետական արգելանոցի անտառատնտեսության բազմամյա անտառապետ Լևոն Հայրապետյանը, իսկ բնասերները հավաքում և այրում են մոտակա անտառի վնասատու միջատների բները, ինչպես նաև մաքրում են ծառերը չորացած ճյուղերից:

Մայիսի 22-ին բնասերները մշտապես նշում են «Ծաղկի տոնը» և այն էլ բնության գրկում՝ Տրդատա բերդի պարիսպների մոտ: Այդ օրը դպրոցի ամբողջ աշակերտությունը տոնական ուրախ տրամադրությամբ, երփներանգ ծաղիկներով ու ծաղկեփնջերով, ավանդական դհոլզուռնայի նվագակցությամբ, մինչև ուշ երեկո երգում է ու պարում:

*ՀՐԱՉՅԱ ՂԱԶԱՐՅԱՆ*

# ՀԱՅ ՔՆԱՐԵՐԳՈՒԹՅԱՆԸ ՆՎԻՐՎԱԾ ՑԵՐԵԿՈՒՅԹ

Երբ մտանք № 109 ռուսական միջնակարգ դպրոցը և դահլիճի դռանը մոտեցանք, մեր ականջին հասան ծանոթ տողերը.

— Նարինջ ես բռել դու, իմ յար,
Զանգում է երգել քեզ սրտս...
Իջնում ես հայոց լեռներեն,
Ինչո՞ւ չես խոսում հայերեն...

Մի քնքուշ աղջկական ձայն Նաիրի Զարյան էր արտասանում: Չխանգարելու համար պետք էր սպասել, որ նա ավարտեր՝ նոր բացեինք դուռն ու ներս մտնեինք, բայց չհամբերեցինք, շտապեցինք տեսնել նրան:

Դահլիճը շատ էր տոնական, իսկ շիկահեր աղջիկը շարունակում էր արտասանել:

— Ռուս է, գիտե՞ք,— շշնջաց կողքիս նստած աշակերտուհին:

Իրինայից հետո բեմում կանգնած խումբը երգեց «Ամպի տակից ջուր է գալիս» երգը: Իսկ հետո Քուչակ ու Նարեկացի, Տերյան ու Դուրյան, Թումանյան ու Իսահակյան արտասանեցին ռուս աղջիկները՝ Լյուդան, Ռաիսան, Ժաննան և ուրիշները:

Դահլիճի պատերին ունենու դալար ճյուղերով զարդարված պատի թերթեր էին փակցված: Ժողովրդական բանահյուսությունից սկսած, հայ քնարերգության բոլոր մեծերին նվիրված էին առանձին պատի թերթեր, թվով գուցե ավելի քան երեք տասնյակ՝ Խորենացի, Նարեկացի, Քուչակ, Սայաթ-Նովա, Դուրյան, Սիամանթո, Թումանյան, Տերյան, Իսահակյան, Պարույր Սևակ...

Օրվա ցերեկույթը նվիրված էր հայ քնարերգությանը. Ներկա էին բանաստեղծներ Սիլվա Կապուտիկյանը, Համո Սահյանը, Գևորգ Էմինը, Ռազմիկ Դավոյանը, Ֆելիքս Պետրոսյանը: Աշակերտները ելույթ էին ունենում ոգեշնչված, գեղեցիկ, սահուն հայերենով: Պարզ երևում էր սերը դեպի հայոց լեզուն և հայ գրականությունը:



Դպրոցի գրական խմբակը հաճախ է այցելում արվեստի ու գիտության օջախները: Թումանյանի տուն-թանգարանում նրանք հատուկ պարապմունք անցկացրին և իմացան, թե ինչ նշանակություն ունեցավ Թումանյանի հիմնած «Վերնատուն» գրական խմբակը: Մատենադարանում ծանոթացան մեր հին ձեռագրերին, տեսան Խորենացու, Բուզանդի, Եղիշեի



# ՀԱՐՈՅԱՆ ԵՂԲԱՅՐՆԵՐՆ ՈՒ ՔՈՒՅՐԵՐԸ

Սկզբում երկու հորեղբոր տըղաները՝ երկու Գևորգներն էին դպրոց հաճախում: Մեծ Գևորգը կրտսեր Գևորգից ընդամենը մեկ դասարան էր բարձր և, բնականաբար, չէր կարող նրան օգնել: Դրա համար էլ, որևէ հարցում դժվարանալիս երկուսն էլ ծնողներին էին դիմում: Իսկ երբ Գոհարիկն ու Անահիտը դպրոցական դարձան, ծնողները արդեն անելիք չունեին, որովհետև Գևորգները մի քանի դասարան բարձր էին նրանցից ու իրենք սկսեցին քույրերին բոլոր հարցերում օգնել ու ընդառաջել: Հետո դպրոց հաճախելու հերթը Եսայուն, Ռուբիկին ու Վաղինակին հասավ: Կրտսերներին օգնելու սովորությունը մեկից-մյուսին փոխանցվեց, դարձավ բոլորի համար սովորություն:

Հարոյանները ուսման մեջ բարձր առաջադիմություն ցուցաբերելու հետ, աչքի են ընկնում իրենց կատարած հասարակական աշխատանքներով: Մեծ Գևորգը, որ անցյալ տարի դպրոցն ավարտեց ու պոլիտեխնիկական ինստիտուտ ընդունվեց, ակորդեոնի խմբակի պարապմունքներին էր մասնակցում, փոքրը՝ շնորհալի նկարիչ է և դպրոցի պատի թերթերն ու պաստառներն է ձևավորում: Իններորդ դասարանցի Գոհարիկը 11-րդ երաժշտական դպրոցում է սովորում և նորից գերազանց առաջադիմությամբ: Եսային՝ ջութակի դասարանում է սովորում, Ռուբիկը՝ դաշնամուրի, մյուսներն էլ երգում են, արտասանում, պարում: Անցյալ տարի գերազանցիկ Հարոյանները դպրոցի աշակերտների համար իրենց ուժերով համերգ տվեցին, իսկ ամռանը բակային ճամբարում երաժշտական բազմաթիվ երեկոներ կազմակերպեցին:

Նրանք հանդես են բերում նաև գերազանց վարք և ընկերասիրություն:



աշխատությունների գրչագրերը, իմացան, թե ինչպես են ստեղծվել Ռոսլինի, Պիծակի մանրանկարները: Գործեր, որոնք այսօր էլ հիացմունք են պատճառում դիտողին:

Գրական խմբակը ղեկավարում է հայոց լեզվի և գրականության ուսուցչուհին՝ Կլարա Մարգարյանը: Նա հաճախ արտաժամ է պարապում այն ռուս երեխաների հետ, որոնք դժվարանում են տանը հայոց լեզվի դասերը ինքնուրույն պատրաստել:



Մեկ էլ տեսար ընկեր Մարգարյանը դասի նախորդ օրը մտավ դասարան և ասաց.

— Վաղը պարապմունքն անց ենք կացնելու Իսահակյանի տուն-թանգարանում, կամ թե՝ Մարտիրոս Սարյանի տանը, կամ Սունդուկյանի անվան թատրոնում: Երբ անցնում էին Թումանյանի «Անուշը», ռուս աղջիկները՝ Լյուդան, Իրինան, Ռաիսան, Ժաննան, Լարիսան առաջարկեցին գնալ ու լսել «Անուշ» օպերան, մանավանդ որ գրական ցերեկույթի ժամանակ պետք է իրենք երգեին «Ամպի տակից ջուր է գալիս» երգը: Եվ գնացին:



Այս և ուրիշ շատ օրինակելի աշխատանքներ է կատարում մայրաքաղաքի № 109 դպրոցի գրական խմբակը ընկեր Կլարա Մարգարյանի ղեկավարությամբ:

Ահա այսպես էլ հայկական դպրոցներում սովորող հայ երեխաները պետք է նույնքան գեղեցիկ ու սահուն ռուսերեն խոսեն:

*ԿԱՏՅԱ ՍԱՐՎԱԶՅԱՆ*



Այս տողերի հեղինակը՝ բելգիացի գյուղատնտես Ժան Պիեռ Ալեն, տասներկու տարի ապրել է Կոնգոյի տարբեր ցեղերի մեջ։ Սառոկ չարաղրված գնալը անցի է անեցել Քենիայի և Տանգանիկայի սահմանի մոտ։ Այժմ Ալեն ապրում է Ամերիկայում, որտեղ և կազմակերպում է մի խոշոր բազմիյա կենդանաբանական այգի։



# ՆԻԶԱԿՈՎ՝ ԱՌՅՈՒԾԻ ԴԵՄ

Երբ մտա մասսայ ցեղի բավականին մեծ գյուղը, բազմաթիվ բնիկներ անմիջապես շրջապատեցին մեքենաս։ Նրանց մաշկը փայլուն էր, որովհետև մարմինները օծել էին կավից և ճարպից պատրաստած քսուքով։ Բոլորի՝ թե՛ տղամարդկանց, թե՛ կանանց և թե՛ երեխաների գլուխները խուզած էին։ Ինձ զարմացրեց կանանց գեղեցկությունը՝ բարձրահասակ էին ու բարեկազմ։

Ես մտերմորեն բարևեցի, և միջին տարիքի ուժեղ մի տղամարդ մոտեցավ ինձ։

— Իմ անունը Մասսակա է,— ասաց նա այդ կողմերին բնորոշ առոգանությամբ։

Այդ րոպեից Մասսական դարձավ իմ ուղեկցորդը։

— Ուզու՞մ ես խոհարար գտնեմ քեզ համար,— հարցրեց նա, երբ միասին վրանն էինք կանգնեցնում։

— Ո՛չ. ես սնվելու եմ ինչպես մասսայները։

Նա ապշած նայեց ինձ։

— Մենք ուտում ենք միայն կաթ, արյուն և միս,— ասաց նա։

Շտապեցի բացատրել, որ չեմ խորշի, բայց նա ասաց, որ կովի արյուն ունենում են միայն առավոտյան, կաթ բերեց։

Երբ հարցրի նրան, թե ինչպե՞ս կարելի է իսկական ռազմիկ դառնալ, Մասսական պատասխանեց.

— Առաջներում երիտասարդները, զինված միայն նիզակով, դաշույնով ու վահանով, կռվում էին առյուծի դեմ։ Համարյա միշտ առյուծն էր հաղթող դուրս գալիս, իսկ մարդը մահանում էր։ Երբեմըն ռազմիկը, այնուամենայնիվ, կարողանում էր սպանել առյուծին։ Այդ դեպքում նա դառնում էր հերոս։ Բայց սպիտակ մարդիկ արգելեցին այդ մենամարտը։ Շատ քահել ռազմիկներ էին կորչում։

— Եվ վերջ տվեցի՞ք։

— Չնայած ամեն տեսակի պատիժներին, որոշ երիտասարդներ դեռևս փորձում են։ Մենք՝ մասսայները, ունենք մի բան, ինչ չունեն մյուսները՝ էմպիժան և օվլուասա (հանդգնություն և հպարտություն)։

Ես որոշեցի ինչ գնով էլ լինի, ապացուցել մասսայներին, և հատկապես՝ ինձ, որ ես նույնքան հանդուգն եմ և հպարտ, որքան նրանք։

Սկզբում Մասսական ընդդիմացավ, բայց իմ համառ պնդումներից հետո, հաջորդ օրը հրաժեշտ տվեց իր երեք կանանց և գնացինք Մանիատա՝ ռազմիկների գյուղը։

Մանիատան նման էր Մասսակայի գյուղին, բայց մի քիչ ավելի մեծ էր։ Այստեղ կային կանայք, երեխաներ և մի քանի ծերունի, որոնք այցելության էին եկել, բայց նրանք չէին նկատվում մկանուտ, բարձրահասակ երիտասարդ ռազմիկների ստվերում։

Ամբողջ օրը մնացի Մանիատայում։ Դիտում էի նիզակ նետող և

սուսերամարտի փորձեր կատարող ռազմիկներին: Երեկոյան կես լիտր թանձր կաթ խմեցի, իսկ առավոտյան ստացա արյունի բաժինը, ինչպես մասայները: Ռազմիկները զարմացել էին, որ մյուս սպիտակների նման չեմ սնվում, իսկ երբ Մասսական հայտնեց առյուծի հետ մենամարտելու իմ ցանկության մասին, սկսեցին քահ-քահ ծիծաղել: Բոլորից բարձր Կոնոկոն էր ծիծաղում՝ բարձրահասակ մի ռազմիկ, որի կրծքի վրա սոսկալի սպիներ կային: Նա միակ մարդն էր Մանիատայում, որին հաջողվել էր առյուծ սպանել:

Դժվարությամբ համոզեցի նրան, որ իր նման եմ մենամարտելու, որից հետո նա համաձայնեց սովորեցնել ինձ մասայների զենքերը գործածելու արվեստը: Երեք շաբաթ ապրեցինք եղբոր նման: Երբ ինձ պատրաստ զգացի մենամարտի համար, մի առավոտ վերջապես գնացինք որսի: Հինգ-վեց ժամ փնտրելուց հետո, Նկատեցինք երկու առյուծ: Անմիջապես ցրվեցինք չորս կողմ ու շրջապատեցինք առյուծներից մեկին: Վերցրի մի քար ու նետեցի նրա վրա. քարը դիպավ ուղիղ աչքի տակ: Գազանը մռընչաց ու շուռ եկավ իմ կողմը: Գիտեի, որ հարձակման է պատրաստվում: Աջ ձեռքով բարձրացրեցի նիզակը, իսկ ձախով վահանը, կուրծքս պաշտպանելու: Առյուծը մի քանի մետր հեռավորության վրա էր: Նայում էր ինձ մի տեսակ շփոթված, բայց և խորամանկ. ժանիքները կիսաբաց էին: Մի րոպե խղճացի այդ ուժեղ կենդանուն, որին պետք է սպանեի: Ձախ ոտքս գցեցի առաջ, պպզեցի և մարտական դիրք ընդունեցի: Առյուծի հետևի թաթերը սկսեցին դողալ, իսկ պոչով ծեծում էր հողը: Մասայները դադարեցին պղմըկել: Գերեզմանային լռություն տիրեց:

Հենց այդ պահին էլ առյուծը հարձակվեց ինձ վրա:

Ամբողջ ուժովս նետեցի նիզակը: Երբ գազանն ու զենքը հանդիպեցին իրար երկնքի ու երկրի միջև, ես ինձ մի կողմ գցեցի, որքան հնարավոր էր՝ հեռու: Առյուծը, կրծքի մեջ խոր մխրճված նիզակով, ընկավ ճիշտ այնտեղ, որտեղ մեկ վայրկյան առաջ ես էի գտնվում:




— Ես մասայ եմ,— բղավեցի երջանկությունից խենթացած:

Կոնոկոն նայեց ինձ իր գեղեցիկ, անկեղծ աչքերով և շնորհեց ամենամեծ պարգևը, որ երբևէ ստացել եմ.

— Դու մասա՛յ ես,— ասաց նա հանդիսավոր տոնով:

Մեկ շաբաթ հետո ես թողեցի Մանիատան և գնացի Նայրոբի՝ դեպի հյուսիս: Ինձ հետ տանում էի առյուծի մորթին, նիզակը, դաշույնն ու վահանը:

*Ռումիներենից թարգմ.*

*Տ. ԴԱՐԲԻՆՅԱՆԸ*

# ԽՈՍՈՂ ԽՐՏՎԻԼԱԿ



Մի քանի տարի առաջ, ԱՄՆ-ում, մարդատար ինքնաթիռը բախվելով սագերի երամին, վթարի ենթարկվեց: ԳՖՀ-ում պատահեց ավելի քան զարմանալին. բեռնատար ինքնաթիռը երեք հարյուր մետր բարձրության վրա քիչ մնաց բախվի թռչունին, որը նիրանների մեջ մուկ էր տանում: Վերջին պահին թռչունը խույս տվեց, բայց վախից բաց թողեց որսը: Եվ մուկն ընկավ ինքնաթիռի շարժիչի մեջ:

Գուցե կարծեք, թե սրանք եզակի դեպքեր են:

Ո՛չ, պատասխանում է վիճակագրությունը: Անգլիայում միայն թռչունների հետ բախվելով, չորս տարվա ընթացքում վնասվել են 788 ինքնաթիռ: Միայն օդաչուների հավասարակշռվածությունն ու ձեռներեցությունն է փրկել մարդկանց կործանումից:

Արդյո՞ք պատահական են նման բախումները: Ո՛չ միշտ, ասում են գիտնականները: Օրինակ՝ արծիվները, ճայերը և ուրուրները (ցին) երբեմն իրենք են գրոհում երկաթյա թռչունի վրա: Երեք տարի առաջ Կոմի-Պերմիանյան ազգային շրջանում 400 մետր բարձրության վրա արծիվը հարձակվեց ԱՆ—2 ինքնաթիռի վրա: Գիշատիչը երկու մետրանոց թևերը թափահարելով գրոհի գնաց. ծակեց ինքնաթիռի թևն ու խրվեց մեջը:

Սագերին և բադերին կարելի է հանդիպել երեք հազար մետր բարձրության վրա։ Միծեռնակներին և ագռավասարյակին (տարինոս) հենց օդանավակայանի վրա։ Իսկ անպատկառ կաչաղակները և ագռավները աշխատում են ինքնաթիռի կանգնած ժամանակ նրա զանազան ճեղքերի մեջ շյուղեր կամ գողացած փայլուն իրեր թաքցնել։ Այդպիսի պահուստները թռիչքի ժամանակ կարող են արգելակել մոտորի աշխատանքը և ինքնաթիռը դարձնել ոչ սարքին։

Գիտնականները առաջարկում են թռչուններին վախեցնելու ակտիվ միջոցներ։ Ամենահինավուրց և ստուգված եղանակն է՝ խրտվիլակ կանգնեցնել։ Բայց նրանից վախենում է միայն սերմնագռավը։ Ուստի առաջարկվել է նոր եղանակ. թռչուններին վախեցնել և փախցնել ռադիոհաղորդակցությունների օգնությամբ։ Ոմանք էլ առաջարկում են հատուկ վարժեցրած արծիվներ օգտագործել և կամ օդակայանի շինություններր ներկել շատ վառ գույնով։ Թռչունները չեն տանում կարմիր և նարնջի գույները։

Բիոակուստիկ միջոցներն առավել ներգործող են. օդանավակայանում պահում է ավտոբուսը հզոր դինամիկով և մագնիտաֆոնով։ Մագնիտաֆոնի ժապավենի վրա գրանցված է թռչունի ձայն՝ ճիչ սարսափի, վտանգի, հանապարհվելու հավաքի։

1964 թ. ամերիկացի կենդանաբան Ֆրինգսը ձայնագրել է սարյակների սարսափի ճիչերը և վերարտադրել դրանք թռչունների մեծ կուտակումների տեղում։ Արդյունքը գերազանց է եղել։ Սարյակների հազարավոր երամներ վայրկենապես այս ու այն կողմ են թռել և երկար ժամանակ այլևս չեն երևացել այդ շրջանում։

Կարելի է և այլ կերպ վարվել. ձայնագրել նրանց հավիտենական թշնամիների ձայները։ Օրինակ՝ ճնճղուկների կուտակման դեպքում հաղորդել բուերի սարսափահար ճիչերը։

*ՆԻՆԱ ՅՈՒՐԳԵԼԱՅՏԻՍ*

## ՇՏԱՊ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ՝ ՁԿՆԵՐԻՆ

**Անցյալ տարվա ամռանը Փարիզի գետերի վերահսկիչներին նոր հոգս ավելացավ։ Նրանք հարկադրված էին տեղափոխել... Սենայի ձկները։**

**Բանը նրանում էր, որ տաքացած և չափազանց կեղտոտված ջրում թթվածնի պարունակությունը խիստ պակասել էր։ Մի քանի օր շարունակ Սենան հազարավոր մեռած ձկներ էր տանում, որոնք տապի զոհեր էին դարձել։ Վերահսկիչները հարյուրավոր կիսամեռ ձկներ էին ուղարկում թարմ ջրով լցված լողավազան՝ «թթվածնային բուժման»։ 24-ժամյա բուժման ընթացքը օգնեց «էվակուացված» ձկներին՝ ապրել մինչև օդերևութաբանների խոստացած անձրևները։**

## ԿՏՈՐ ՍԱՐԴՈՍՏԱՅՆԻՑ

Անսովոր ամրություն ունեցող այդ կտորը ամենից առաջ Չինաստանում հայտնվեց «Հարավային ծովի սատին» անվանմամբ։ Իրոք, այն պատրաստված էր սարդոստայնից, որը հյուսում են խոշոր սարդերը։ Այդպիսի սարդոստայնի յուրաքանչյուր թելը կարող է 80 գրամ ծանրություն պահել։ Բացի այդ՝ թելը այնքան առաձգական է, որ կարող է ձգվել իր ամբողջ երկարության մեկ քառորդի չափով։

Պոլինեզցիները սարդոստայնի թելից հագուստ ու ձկնորսական ցանց են պատրաստում։

Ֆրանսիայի թագավոր Լյուդովիկոս 14-րդը մի անգամ իսկական սարդոստայնե ձեռնոցներ, գուլպաներ նվեր ստացավ։ Փորձեցին իրենց մոտ հատուկ եղանակով ստանալ այդ գործվածքը, բայց մասնակի փորձերից այն կողմ չանցան։ Չափազանց շատակեր դուրս եկան այդ սարդ-ջուլհակները։

## ՀՈՒՄՈՐ

*Բժշկի մոտ են գալիս երկու պատանիներ։*

*— Ի՞նչ է պատահել,— հարցնում է բժիշկը նրանցից մեկին։*

*— Մենք խաղում էինք փոքր խաղագնդիկներով, և ես կուլ տվեցի մեկը։*

*— Իսկ քե՞զ ինչ է պատահել,— հարցնում է բժիշկը երկրորդ տղային։*

*— Ես պետք է ստանամ այդ կուլ տված խաղագնդիկը։ Այն իմն է։*

*Ուսուցչուհին ստուգելով աշակերտուհու գրավոր աշխատանքը, հարցնում է.*

*— Ինչու՞ է հայրիկդ տետրիդ մեջ ուղղումներ կատարել։*

*— Որովհետև մայրիկս սխալ էր գրել,— պատասխանում է աշակերտուհին։*

*Հայրը գրասեղանի մոտ նստած՝ կատարում էր երկրորդ դասարանցի որդու տնային աշխատանքը։ Իսկ տղան մի կողմ կանգնած՝ փուչիկից օճառի պղպջակներ էր թողնում։*

*Հանկարծ նա ընդհատեց գործը և ասաց հորը.*

*— Է՜, հայրի՛կ, եթե մի հասարակ խնդիր լուծելու համար այդպես չարչարվում ես, ի՞նչ ես անելու, երբ ես 10-րդ դասարան հասնեմ։*

*ՀՈՒՍԻԿ ԴԱՎԹՅԱՆ*

## ԹԻԹԵՌՆԵՐԻ ԶԲՈՍԱՅԳԻՆ

ՅՈՒՆԵՍԿՕ-ի հաղորդագրության համաձայն, Ավստրալիայի միջատաբանները ուսումնասիրում են թիթեռների կյանքը: Պարկը գտնվում է Սիդնեյից ոչ հեռու և զբաղեցնում է 14 հեկտար տարածություն: Այստեղ թիթեռները կարող են թաքնվել ամենամոլի հավաքածու կազմողների աչքից: Հազվադեպ հանդիպող թիթեռները պահվում են հատուկ փակ բաժիններում:

## Ո՞ՒՐ Է ԳՆՈՒՄ ՔԱՂԱՔԸ

*Լեհաստանում մի քաղաք կա, որը աստիճանաբար փոխում է իր տեղադրությունը: Ահա տասը տարի է, ինչ Վալբժիխը իր հին կենտրոնից տեղաշարժվում է հյուսիս-արևմուտք: Հարյուր երեսուն հազար բնակիչ ունեցող այդ քաղաքը՝ Ներքին Սիլեզիայի քարածխի արդյունաբերական մայրաքաղաքը, տասը տարվա ընթացքում «անցել է» մոտ 7 կիլոմետր:*

## ՊԱՀԵՍՏ՝ ԼՃԻ ՏԱԿ

*Ինչպե՞ս ավելի լավ պահպանել ցորենն ու այլ մթերքները։ Այս պրոբլեմը մտահոգում է աշխարհի շատ գիտնականների։ Ճապոնացի մասնագետները առաջարկում են ամբարները փոխարինել ջրի հաստ շերտով ծածկված բետոնե հրապարակներով։*

*Բրնձով լցված հսկայական պլաստմասսայե պարկերը իջեցնում են մինչև 6 մետր խորություն ունեցող գետի կամ լճի հատակը։ Այստեղ առանց ջերմության կտրուկ տատանումների և օդի ներթափանցման, բրինձը և այլ մթերքները կարող են մի քանի տարի ավելի դիմանալ։*

# ԺԱՄԱՆԱԿ ԺԱՄ ԺԱՄԱՑՈՒՅՑ

ՎԻԳԵՆ ԽԵՉՈՒՄՅԱՆ

*Հարցրեք ում կամենաք, թե ե՞րբ է ավարտվում օրը, և ձեզ կպատասխանեն՝ «Գիշերվա ժամը 12-ին»: Այդ նշանակում է, որ օրը սկսվում է գիշերվա ժամը 12-ից հետո, այսինքն, զրո ժամից:*

*Բայց մենք՝ հայերս, միաժամանակ ասում ենք՝ օրը լուսացավ: Ուրեմն ի՞նչ է նշանակում այս դարձվածքը:*

*Մեր լեզվի (ինչպես և ամեն լեզվի) բառ ու բանում, թաքնված են առեղծված և հանելուկ թվացող շատ հարցերի ուղղակի պատասխանները:*

*«Օրը լուսացավ» արտահայտության բուն իմաստը ստեղծվել է հնագույն ժամանակներում, երբ նոր էր կազմավորվում հայոց լեզուն: Նախ դրանից ենք իմանում, որ հնուց ի վեր հայերը օրասկիզբ են համարել լուսաբացը, երբ արթնանալուց հետո անհրաժեշտ էր գործի կանգնել, աշխատել ու ստեղծել: Այս ճշմարտությունը հաստատում են ձեռքով գրված մեր մատյանները, որտեղ կարելի է կարդալ. «Եվ հայոց մեր ազգը օրվա սկիզբն ընդունեց առավոտից՝ արեգակը ծագելուց»:*

*Մինչդեռ հին ժողովուրդների մեծ մասը օրասկիզբ էր համարում կեսօրը, կամ մայրամուտը և կամ կեսգիշերը:*

*Հնագույն հայերը եգիպտացիների նման օրը բաժանել են 24 հավասար մասերի՝ ժամերի: Մեկ ժամը մեծ մասամբ 30 մասից էր բաղկացած, որտեղ ամեն մի մասը հավասար էր երկու րոպեի: Բայց տարվա բոլոր ամիսներին հավասար 12 ժամ ցերեկ և 12 ժամ գիշեր չի լինում, այդպես է միայն երկու ամիս՝ գարնանային և աշնանային գիշերահավասարի ժամանակ:*

*Գիշերվա և ցերեկվա հավասար 12 ժամերը հին հայերը կոչում էին ոչ թե թվով, այլ համապատասխան անուններով: Այսպես, օրինակ, ցերեկվա առաջին ժամերն էին՝ Այգն, Ծայգն... Գիշերային առաջին ժամերը կոչվում էին՝ Խավարային, Աղջամուղջն, Մթացյալն...*

*Սակայն ժամերն իմանալու համար ամեն մարդ չէր կարող ժամանակը հաշվող գրքեր ունենալ ու կարդալ, կատարել մաթեմատիկական ու աստղաբաշխական այն հաշիվները, որոնցով մասերի էր բաժանված օրվա տևողությունը: Մի հնար կար. մոտավորապես ժամերը որոշել արեգակի ու լուսնի (երկնակամարի վրա երևացող) շարժմանը հետևելով: Սա ևս դժվար միջոց էր:*

*Երկար որոնումներից հետո, Հայաստանում շատ վաղ դարերից ստեղծվեցին ցերեկվա 12 ժամը ցույց տվող արեգակնային ժամացույցներ, որոնք սկսեցին փորագրել շինվածքների հարավային պատերին: Փորագիր կիսաշրջանի վրա, համաձայն տեղի արեգակ-*

նալին ժամերի տևողության, գրվում էին թիվ նշանակող այբուբենի տառերը՝ Ա-ից մինչև ԺԲ, այսինքն՝ 1-ից 12: Այս կիսաշրջանի կենտրոնում ցցված մետաղե ձողիկի ստվերը ցերեկվա ընթացքում սահում էր թվանշան տառերի վրայով և ցույց տալիս ամեն մի ժամը մոտավոր, իսկ հաճախ, եթե հմուտ վարպետ էր ժամացույց փորողը՝ բավականին ստույգ ճշտությամբ:

Գեղեցիկ, այլև դասական օրինակ է Զվարթնոց տաճարի վրա 7-րդ դարում փորագրված արեգակի ժամացույցը: Նման ժամացույցներ կան համարյա մեր բոլոր նշանավոր հուշարձանների վրա: Դրանցից մեկը, փորված Հաղարծին վանքի հարավային պատի վրա, ցույց է տալիս ոչ թե 12, այլ 11 ժամ: Այս բացառությունը կարելի է բացատրել միայն հետևյալ կերպ: ժամացույց փորողը նկատի է ունեցել շինվածքի դիրքը: Հաղարծինը գտնվում է անտառապատ բարձր լեռներով շրջապատված ձմակում, այնտեղ գարնանն ու ամռանը իսկապես միայն 11 ժամ է երևում արեգակը: Հազարավոր տարիներ արեգակի ժամացույցները համարվել են նաև ճարտարապետական զարդ: Դրա համար էլ նրանք բազմազան են իրենց զարդահարդարվածքներով, թեև ընդհանուր են արեգակի ճառագայթների նման ժամերն իրարից անջատող շառավիղները: Արեգակի ժամացույցի գլխիվայր շրջված փորագրությունն է օգտագործված Մուղնու վանքի հարավային մուտքի վերևում: Այստեղ նույնիսկ չի մոռացվել ստվեր նետող ձողիկի փորվածքը:

Հետաքրքրական է, որ հայոց արեգակնային ժամացույցների տասներկու ճառագայթները, իբրև ճարտարապետական զարդ, օգտագործված են միայն հարավային պատերի վրա, այսինքն՝ ճիշտ այնտեղ, որտեղ լինում են իրենք՝ ժամացույցները: Նույնպիսի զարդեր են նկարվել միաժամանակ ձեռքով գրված մեր հին գրքերի խորաններին ու գլխազարդերի մեջ, ընդ որում գիտակցաբար մեծ մասամբ նկարել են միայն 12 ճառագայթ, ինչպես արվում է ժամացույցների վրա:

Հայաստանի միջնադարյան քաղաքներում հետզհետե պահանջ առաջացավ ամենքին լսելի դարձնել օրվա ժամերը: Այդ անհրաժեշտ էր ոչ միայն որոշակի ժամերին բացելու և փակելու համար քաղաքի դարպասները, այլև բազմամարդ շուկաները, արհեստանոցները, առևտրական կրպակները: Արեգակի ժամացույցով կարգավորում էին օրավարձով աշխատողների ժամանակը:

Մեր մշակույթի պատմության մեջ նշանավոր են անեցիների ձուլած փոքրիկ, բայց շատ զրնգուն զանգերը: Այդ զանգերը կախում էին արեգակի ժամացույցների մոտ և համապատասխան քանակի զնգոցով ազդարարում էին յուրաքանչյուր ժամը: Միջնադարյան բանաստեղծ Ներսես Շնորհալին արեգակի ժամացույցի ժամերն ազդարարող այս զանգերի և նրանց լեզվակների մասին գրել է հետևյալ քառատող հանելուկը.

Երկու եղբայրներ միմյանց նման,
Որոնք կախված են մի գերանից,
Իբրև մահապարտ այդպես կախված՝
Աղաղակում են ամեն ժամի:

# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՏԱՐԱԾՎԱԾ ՎԱՅՐԻ ՊՏՂԱՏՈՒՆԵՐԸ

Հայաստանում վայրի խուրմա և հոնի քիչ է հանդիպում։ Խուրման ունի դեկորատիվ բարձր արժեք. գեղեցիկ ծաղիկներ, համեղ պտուղներ, բազմերանգ տերևներ և հիասքանչ սաղարթ։

Հայաստանում հանդիպում է վայրի խուրմայի միայն մեկ տեսակ։ Ծառ է, փարթամ, գեղեցիկ սաղարթով։ Ջերմասեր է։ Տերևները թափվող են, ընդ որում թափվելուց առաջ սովորաբար կարմրում են։ Պտուղը կլորավուն հատապտուղ է, ունի դեղին, վառ նարնջագույն կամ տոմատի կարմիր գույն։ Պտղամիջուկը հյութալի է, անուշաբույր և շատ համեղ, օգտագործվում են թարմ, ինչպես նաև չորացած վիճակում։ Խակ վիճակում չափազանց տտիպ է, իսկ հասունացած ժամանակ տտիպությունը անհետանում է։ Պտղի մեջ կա 2—10 սերմ։

Մեր հանրապետությունում հանդիպում է հյուսիսային Հայաստանի մի շարք շրջաններում (Շամշադին, Իջևան, Նոյեմբերյան, Թումանյան) և Մեղրիում։

Մեր անտառային հոնին առատ և համեղ պտուղներ տալու հետ միասին, նաև դեկորատիվ գեղեցիկ բույս է։ Ծաղկում է վաղ գարնանը և տալիս է գեղեցիկ, դեղին գույնի ծաղիկներ, որոնք



վաղ գարնանը զարդարում են անտառի դեռևս գորշ ու անհրապույր բնապատկերը։ Պտուղները հասունանում են բավականին ուշ՝ սեպտեմբեր—հոկտեմբեր ամիսներին։ Դրանք շատ հյութալի են ու համեղ, մանավանդ լրիվ հասունանալուց հետո։ Օգտագործում են պահածոների արտադրության մեջ, պատրաստում են հիանալի կոմպոտներ և մուրաբաներ։







Վայրի հոնին տարածված է Հյուսիսային Հայաստանի գրեթե բոլոր անտառների ցածրադիր մասերում, Մեղրու, Ղափանի, Գորիսի շրջաններում, Վայքում՝ Ջերմուկի և Եղեգնաձորի շրջաններում և այլն։

ԼԵՎՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

## ԳԱՂՏՆԱԳԻՐ

Հարցերին ճիշտ պատասխանելուց հետո, կըկարդաք պիոներական երգից մեկ քառատող։

1. Քաղաք, որտեղ 1929 թ. տեղի է ունեցել համամիութենական պիոներական առաջին հավաքը — 17, 7, 19, 6, 8, 2։

2. Մանկական ամսագիր — 15, 13, 7, 10, 9, 3։

3. Համամիութենական պիոներական ճամբար— 2, 3, 16, 9, 6։

4. «Թիմուրը և նրա ջոկատը» գրքի հեղինակը— 12, 2, 5, 20, 2, 3։

5. Հարավսլավացի հերոս պիոներ, հակաֆաշիստ—18, 4, 1։

6. Բաղաձայն հնչյուն— 11։

Կազմեց՝ ՇԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆ



Լույս է տեսնում 1923 թվականից։

# ՊԻՈՆԵՐ

№ 9 սեպտեմբեր 1974 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ ԵԿ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։*
*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 04663: Պատվեր 1428: Տպաքանակ՝ 78468: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 2/IX 1974 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։

